# ՆՇԱՆԱՎՈՐ ԱՇԽԱՐՀԱՔԱՂԱՔԱՑՈՒ՝ ՄԱՐԻԵՏԱ ՇԱՀԻՆՅԱՆԻ ԶՂՋՈՒՄ-ԽՈՍՏՈՎԱՆԱՆՔԸ

**Ձեզ ենք ներկայացնում խորհրդային գրականության խոշորագույն ներկայացուցիչներից մեկի հետադարձ խոսքը՝ արդեն հավերժության մեջ ծվարած Եղիշե Չարենցին:**

Գրեթե ոչ մի հարցում մենք իրար չէինք հասկանում, հայկական մշակույթի միևնույն երևույթները տարբեր կերպ էինք գնահատում, ընդհարվում էինք նաև փիլիսոփայական հարցերում: Ու, նախ և առաջ, մենք տարբեր կերպ էինք ընկալում հայ ժողովրդի պատմական տեսակը: Չարենցը, որը մեծացել էր թուրքական միջավայրում, երկու ազգային մշակույթների և երկու կրոնների հակասության պայմաններում, իր կաշվի վրա էր զգացել, թե ինչ է սեփական ազգային նկարագիրը խեղդելուց, կեղեքելուց և ոչնչացնելուց պահպանելը, տեսնում էր հայության առավել բնորոշ, առավել «սեփական», անկրկնելի, ազգային տիպականացման պահպանմանն ուղղված պատմական դերի ողջ ուժը:

Ես, ընդհակառակը, մեծացել եմ մոսկովյան մտավորականության միջավայրում, որտեղ ազգային առանձնահատկություններին մեծ նշանակություն չէին տալիս, իսկ գլխավոր էին համարվում համամարդկային արժեքները և դրանք յուրացնելու կարողությունը: Մանկուց շուրջս տեսնելով մտավորական «ռուս հայերի»՝ ես ամենից շատ հպարտանում էի միջազգային մշակույթը խորապես ընկալելու և «աշխարհաքաղաքացի» դառնալու հայերի հատկությամբ:

Մանկուց մեջս տպավորվել էր Կլոդ Ֆառերի ինչ-որ մի վեպ, որի հերոսուհին մի ծեր հայուհի էր, որը դարձել էր փարիզյան սրահի ամենակրթված տիրուհիներից մեկը: Նա տարբեր երկրների գիտնականների ու նկարիչների հետ զրուցում էր բոլոր լեզուներով, մինչդեռ մինչև քսանյոթ տարեկանը նա, իր իսկ հավաստմամբ, անգրագետ էր եղել և ապրել առանց լուսամուտների մի հյուղակում: Չարենցին զայրացնում էր, որ ոչ մի եվրոպացի, առավել ևս Կլոդ Ֆառերի նմանը, չի կարող հասկանալ հայ կնոջ էությունը: Այ, եթե ինքը՝ Չարենցը, տեսներ այդ կնոջը, կմոտենար նրան և հայերեն կշշնջար նրա ականջին. «Մայրի՛կ, խոհանոցից ինձ մի բաժակ սառը ջուր բեր» և նրա ուսերի շարժման, նրա քայլվածքի, հայացքի մեջ նա կտեսներ ոչ թե «եվրոպական մշակույթի բոլոր գագաթները նվաճած» հայուհուն, այլ այն հայուհուն, որը հազարամյակներ շարունակ մի բաժակ ջուր է բերել ամուսնուն, սեղանի շուրջը նստել է միայն նրանից հետո և հնազանդվել է նրան:

– Դո՛ւք էլ, տիկի՛ն ջան, – ասում էր նա ինձ տասնյակ անգամ՝ մեջս առաջացնելով անզոր զայրույթի բռնկում, – դո՛ւք, սիրելի՛ Մարիամ, ճիշտ ու ճիշտ նույնպիսի հայ կին եք և երբեք կհամոզվեք դրանում:

Այս բառերն ինձ այնպես էին զայրացրել, որ ես ոչ մի անգամ դրանք չեմ հիշատակել: Եվ եթե ես այժմ, կյանքիս ութսուներորդ տարում, համարձակվում եմ պատմել այդ մասին, ապա միայն այն պատճառով, որ... համոզվեցի Չարենցի ճշմարտացիության մեջ: Հետադարձ հայացք նետելով ահռելի և անդադար աշխատանքով և նույնպիսի ահռելի վիրավորանքներով լի կյանքիս, չստանալով կատարածս աշխատանքի իսկական գնահատականը, զարմանալով իմ նկատմամբ այդպիսի անհարգալի վերաբերմունքից և ինքս ինձ բազմիցս հարցնելով՝ ինչու՞, ինչու՞, հանկարծ հասկացա, որ ես հենց այն հայ կինն եմ, որը համառորեն շարունակում է աշխատել, որը հազարավոր տարիներ տառապել է, և որի աշխատանքը, եթե ասենք դառը ճշմարտությունը, շահագործվել է իբրև սովորական ու շատ բնական մի բան:

*Մարիետա ՇԱՀԻՆՅԱՆ, 1967 թ.*
*Ռուսերենից թարգմանեց Արտաշես Թադևոսյանը*



## ՍԻՐՈՒՆ ԼՃԱԿ

Շիրազը լճափին նստած թղթից նավակ էր պատրաստում, երբ նրան մոտեցավ մի «քննադատ» ու փորձեց «անակնկալի բերել» բանաստեղծին:

– Շիրա՛զ, ասում են սուր միտք ունես, դե մի քառյակ հորինիր այս լճի մասին: Դեռ խոսքը չէր վերջացրել, երբ Շիրազն արտասանում է.

Սիրու՛ն լճակ,
Մեջը՝ նավակ,
Իշու՛ քուռակ
Չեղա՛վ քառյակ:

***

Վարպետին հարցնում են, թե ո՞վ է Շիրակի ամենաբարձր գագաթը՝ դու՞, թե՞ Իսահակյանը:

– Արագա՛ծը, – պատասխանում է Շիրազը:

### Շիրազը միակն է

Մեծն Շիրազը հրավիրված է լինում հարսանիքի: Հանկարծ աղմուկ է բարձրանում, թե հարևան շինությունն այրվում է: Մարդիկ դուրս են նետվում սրահից եւ հավաքվում բակում: Մի կուսակցական մոտենում է Վարպետին ու ասում.

– Գիտե՛ս, որ մենք՝ ընկեր կոմունիստները, վերջում դուրս եկանք, իսկ դուք, փաստորեն, այդքան մտահոգվեցիք ձեր կյանքի համար:

– Իհարկե, – պատասխանեց Շիրազը, – կոմունիստները շատ են աշխարհում, իսկ Շիրազը միա՛կն է:

### Քննություն «Տրամաբանությունից»

Շիրազը մտնում է քննության, բայց դասախոսն անմիջապես «պայթում է»:

– Ինչու՞ ես եկել: Ամբողջ տարին քեզ չեմ տեսել: Դու առարկայից բան չգիտես...

– Ես շատ բան գիտեմ, – պատասխանում է Շիրազը:

– Դե ասա՛ ի՞նչ է տրամաբանությունը:

– Դա այն է, որ ես ունեմ, դու՝ չունես:



### Պատից օր հանենք, մեր սրտից ոնց հանենք...

Շիրազի մոր հոգեհանգստյան արարողությանը ցանկանում են մասնակցել նաեւ կուսակցական ու պետական մի շարք «այրեր»: Մոտենալով Վարպետի տանը՝ լուր են ուղարկում նրան, որ իջեցնի պատից կախված ԱՆԴՐԱՆԻԿԻ նկարը: Շիրազը զայրույթից փոթորկվում է եւ պատշգամբից գոռում. «Ծո՛, դուք պիղծ եք, բոլորդ միասին ԶՈՐԱՎԱՐԻՍ ճկույթը չարժեք: Պատից օր հանենք, մեր սրտից ոնց հանենք...»:

# Հայերի և նրանց էության մասին




## Սբ. Մարկոսի հրապարակը

XVII դարում Վենետիկի Սբ. Մարկոս տաճարի գրանիտե սյուներին երկաթագիր ու բոլորագիր տառերով փորագրված էին հայ վաճառականների անունները, դիցուք՝ Երևանցի Եղիազար (1613 թ.), Զաքար (1616 թ.), Հովհաննես (1663 թ.): Հայերը Սբ. Մարկոսի հրապարակում ունեին բազմաթիվ կրպակներ, իսկ 1800 թ. դրանցից մնացել էր 12-ը:

## Գորգագործը

XVIII դարի կեսերին Ավստրո-Հունգարիայում մի հետաքրքիր հայ կար՝ Յոհան Մաձինսկի անունով, նույն ինքը՝ Հովհաննես Մաջարյան կամ Հովհաննես Հունգարացի: Մանուկ հասակում նա հոր հետ Հունգարիայում գերեվարվել ու տարվել էր Կ. Պոլիս: Այստեղ մի հայ քահանայի մոտ հայերեն գրել-կարդալ էր սովորել, ապա յուրացրել մետաքսաթել ու ոսկեթել գորգ գործելու արհեստը և վերադարձել Լեհաստան: 1757 թ. նա Սլուցկ քաղաքում գործում էր ոսկեթել գորգեր, որոնք կոչվում էին «պոլոնեզ»: 1758 թ. Հովհաննեսը Վիեննայի իշխան Միխալ Կազիմիր Ռաձիվիլի հետ համաձայնություն ստորագրեց՝ Վիեննայի պարսկական գորգերի արտադրության գործարանի վարչությունը ստանձնելու և բազմաթիվ սկսնակների գորգագործություն սովորեցնելու վերաբերյալ:

## Հարբին

1918 թ. Չինաստանի Հարբին քաղաքում բնակվող արևմտահայերի ու պարսկահայերի թիվն այնքան մեծ էր, որ նախ կառուցել են փայտաշեն մատուռ, իսկ 1923-ին՝ Սբ. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցին:

Եկեղեցաշեն այդ մարդկանց թվում աչքի էր ընկնում խանութի սեփականատեր Գրիգոր Կայայանը, որն ապրում էր Հայլար քաղաքում: Նրա կինն էր Մարիամը, զավակներն էին Լևոնը, Տիմոթեոսը, Գևորգը, Եպրաքսյան: Լևոնն ամուսնացած էր Վարդանուշի հետ, և ունեին Նունե անունով դուստր:

## Հովհ. Թումանյան. «Մեր ապագան կապված է Ռուսաստանի հետ»

1917 թ. օգոստոսի 3-ին Պյատիգորսկ ժամանեց Հովհ. Թումանյանը, և այդ առիթով Ժողովրդական տանը կազմակերպվեց բարեգործական երեկո-հանդիպում: Հանդիպմանը ներկա գտնվելու համար հատուկ ժամանել էին Վ. Բրյուսովը, Ս. Գորոդեցկին և Կ. Բալմոնտը: Հովհ. Թումանյանն ասաց.



«Մեր ապագան, ինչպես և միշտ ասել եմ, և դա դուք գիտեք, կապված է Ռուսաստանի հետ, իսկ որքան ազատ լինի Ռուսաստանը, այնքան ավելի լավ և Հայաստանի, և ամբողջ աշխարհի համար»:

## Պատմության շարունակություն

2009 թ. «Հայրենիք» ակումբը հրատարակեց իմ՝ «Ակնարկներ հայ վաճառականության պատմության» գիրքը, ուր ներկայացրել էի աշխարհի 10 երկրներում հայոց առևտրատնտեսական գործունեությունը: ԱՄՆ-ին վերաբերող գլխում անդրադարձել էի Ֆրեզնոյին, ուր նշել էի, որ 1880 թ. այստեղ բնակություն հաստատած առաջին հայերը եղել էին մարզվանցի եղբայրներ Հակոբ և Կարապետ Սերոբյանները, որոնք զբաղվում էին պտղավաճառությամբ: Երկու տարի անց նրանց հորդորներով Ուստրից տեղափոխվել էին մյուս եղբայրները՝ Սիմոնը, Գևորգը, Հովհաննեսը, ինչպես նաև մի քանի այլ հայրենակիցներ: Հակոբ Սերոբյանն առաջինն էր, որ կալվածք գնելով՝ դարձել էր հողի սեփականատեր:

Իսկ մեկ ուրիշը՝ մշեցի Մելքոն Մարգարյանը, նախ ներգաղթել էր Նյու Յորք, ապա 1883 թ. երկրի տարածքը հատելով՝ հաստատվել Սան Ֆրանցիսկոյում և մի քանի ամիս անց մշտապես տեղափոխվել Ֆրեզնո՝ կառուցելով առաջին սեփական տունը:

1897-ին այստեղ արդեն բնակվում էր 329 հայ, որոնք ունեին 1800 ակր սեփական հող, իսկ հավաքական նյութական կարողությունը կազմում էր 150-200 հազար դոլար:

Ինչո՞ւ հիշատակեցի այս ամենը: Գրքիս լույսընծայումից 5 տարի անց բոլորովին պատահաբար համացանցում աչքիս ընկավ 1901 թ. տպագրված Ֆրեզնոյի մի յուրատեսակ գովազդաքարտեզ, որը պարունակում էր քաղաքի հատակագիծ-տեսարանը և առավել աչքի ընկնող հաստատությունները: Ահա այն:

Վերին ձախ շեղանկյան մեջ Սերոբյան եղբայրների գործարանն է՝ Seropian brothers. Packers & Shippers of Raisin Figs («Սերոբյան եղբայրներ», չամչի ու թզի փաթեթավորում և առաքում):

Ձախ կողմի վերևից 4-րդը Մ. Մարգարյանի գործարանն է՝ Markarian & Co. Raisins Figs and Evaporated fruit («Մարգարյան և ընկ.», չամիչ, թուզ և չորացրած միրգ):

Ակնհայտ է, որ Սերոբյան եղբայրներն ու Մ. Մարգարյանը ոչ միայն երկարամյա հաջող տնտեսական գործունեություն էին ծավալել, այլև արժանացել այն բանին, որ նրանց ձեռնարկությունների պատկերները ներառվեն Ֆրեզնոյի գովազդաքարտեզում:



## Եղիսաբեթ Սարգսյանի «Գրիգոր Արծրունին»

Ադրբեջանցիները ունեին մի մեծահարուստ՝ Հաջի Զեյնալ-Աբդին Թաղիև, որին պաշտում էին կենդանության օրոք ու երախտագիտությամբ հիշում են առ-այսօր: Սա սովորական անգրագետ պատշար էր: Երբ 1872 թ. ռուսական կառավարությունը վաճառեց Բաքվի նավթադաշտերը, նա ընկերակցեց Բաղդասար և Պողոս Սարգսյան եղբայրներին, երեքով վճարեցին 14,961 ռ. ու դարձան 20 տեղամասերի համատերեր, իսկ հետագայում բոլորն էլ վաճառեցին նավթահորերը:

Սակայն այս պատումը Պողոս Սարգսյանի կնոջ Եղիսաբեթի ու նրա նավի մասին է: Տիկինը պարզապես պաշտում էր Թիֆլիսի «Մշակ» թերթը և նրա խմբագրի գաղափարների թունդ համակիրն էր: Եղիսաբեթի սերն ու նվիրվածությունը լրագրի ու Գրիգոր Արծրունու հանդեպ այնքան մեծ էր, որ 1894 թ. խմբագրի մահից երկու տարի անց, գնեց մի շոգենավ և անվանեց «Григор Арцруни»:

Երբ Բաքվում հաստատվեցին բոլշևիկյան կարգեր, շոգենավը յուրացրին ու հանձնեցին «Ազնեֆթ» պետական նավթարդյունաբերական ընկերությանը: 1937 թ. «Григор Арцруни»-ն վերանվանվեց «Валерий Чкалов»: 1941-ին սպառազինվեց, իսկ պատերազմի ավարտից հետո զինաթափվեց ու շարունակեց բեռնափոխադրումներ կատարել Կասպից ծովում: 1948-ին «դուրս գրվեց» ու սկսեց ծառայել որպես վերջրյա թիրախ:

Ռմբահարման հետ մեկտեղ վերջնականապես խորտակվեց Եղիսաբեթ Սարգսյանի շոգենավի հուշը:

## Թընկըր

Պետրոս Թընկըրը հայ ժողովրդի ամենախորհրդավոր, ամենաարտակենտրոն (էքսցենտրիկ) անձնավորություններից մեկն է: Եղել է Վիեննայի Մխիթարյան միաբանության վարդապետ, ապա, հարելով հնդկական բնազանցական (մետաֆիզիկական) փիլիսոփայությանը, հեռացել: Եկել էր Ջմյուռնիայի մոտ գտնվող Բուջա գյուղ, բլրակի վրա մի բերդամրոց կառուցել և 40 տարուց ավելի ապրել լիակատար մենության մեջ: Համարելով, որ խաղաղության

Էջ 15

* Խոսքիս ընթացքը կանգնեցնում եմ, երբ անպատշաճություն եմ նկատում կամ հավաստիության կողմից կասկածելի մի բան:

*Մովսես ԽՈՐԵՆԱՑԻ*

* Նախանձն է չարիքի սկիզբը:
* Մարդիք ավելի շատ օրինակին են հետևում, քան ճշմարտությանը:
* Ով ցանկանում է նայել արեգակի ճառագայթներին, պետք է սրբի ու հեռացնի աչքերի պղտորությունն առաջացնող կեղտն ու ճպուռը, որպեսզի այդ աղտոտությունները, որ երևում են բբերի շուրջ, պայծառ լուսին նայելու արգելք չլինեն:

*Եզնիկ ԿՈՂԲԱՑԻ*

* Վայ նրան, որ տուն է շինում ոչ արդարությամբ և վերնահարկ է կառուցում ոչ իրավունքով:

*Փավստոս ԲՈՒԶԱՆԴ*

* Համբավն ուրիշ է, ճշմարտությունն ուրիշ:
* Լավ է աչքով կույր լինել, քան մտքով կույր:

*ԵՂԻՇԵ*

* Չի կարելի նմանվել պիղծ ու վատթար գործերով լցված մարդկանց, որոնք իրենց աչքի գերանը չտեսնելով, ուրիշի աչքն են զննում, որ շյուղ հանեն:

*Ղազար ՓԱՐՊԵՑԻ*

* Զարմանքը փիլիսոփայության սկիզբն է:
* Վեցամսյա և ութամսյա ծնված երեխաները չեն ապրում, իսկ յոթ ամսականները ապրում են: Երեխաները սովորաբար յոթ ամսական ժամանակ ատամ են հանում, իսկ յոթ տարեկան հասակում փոխում են:
* Ովքեր գեթ մի անգամ փիլիսոփայական խոսք են տենչում և պատեհ առիթ են ունենում լոկ մատի ծայրով ճաշակել նրա քաղցրությունը, նրանք բոլոր երկրավոր հոգսերին «մաք բարյավ» ասելով, ողջախոհ մի մոլությամբ անձնատուր են լինում նրան:

*Դավիթ ԱՆՀԱՂԹ*

* Եթե Հայաստանի մեծամեծները թողնեն իրենց անկարգ ճամարտակելը միմյանց դեմ, միաբան լինեն և չլինեն հետևող եղբայրասպան Կայենին, այն ժամանակ ոչ թե թշնամիները հայերին, այլ հայերը իրենց թշնամիներին գետնին կտապալեն:

*Հովհաննես ԴՐԱՍԽԱՆԱԿԵՐՏՑԻ*

* Վա՜յ, երկու ճանփաներու մեջտեղ շվաբած մեղավորիս:

*Գրիգոր ՆԱՐԵԿԱՑԻ*

* Ջրպարտանքից և հեյրուրանքներից ոչ ոք զերծ չի մնացել, ոչ ոք չի խուսափել:
* Անտարբերությունը համարյա հանցագործություն է: Մեղավոր է նա, ով ասում է՝ ինձ չխայթող օձը թող հազար տարի ապրի:

*Գրիգոր Մագիստրոս ՊԱՀԼԱՎՈՒՆԻ*

* Մեռած է այն հավատը, որին գործեր չեն հետևում:

*Ներսես ՇՆՈՐՀԱԼԻ*

* Մարդու իմացական ունակությունները (զգայություն, բանականություն և հավատ) միասնական իմացական բնության բաղկացուցիչ մասերն են, և միայն դրանց համատեղ գործունեությունը կարող է ապահովել մարդու ճանաչողության ամբողջությունն ու լրիվությունը:

*Գրիգոր ՏԱԹԵՎԱՑԻ*

* Մարդ կա, որ հազար արժե, հազար մարդ կա, որ մեկ մի չարժե.
Այն մարդն, որ հազար արժե, անգետին մոտ փող մի չարժե:

*Նահապետ ՔՈՒՉԱԿ*

* Աշխարհս թեկուզ քոնն ըլի, ի՞նչ պիտի տանիս:

*ՍԱՅԱԹ-ՆՈՎԱ*

* Տգիտության պատճառով հայերը մոռացել են ազատության ու լուսավորության վեհ գաղափարները:

*Հովսեփ ԷՄԻՆ*

* Հայերի կրած տառապանքների պատճառներից մեկն էլ ոչ այնքան օտարազգիների տիրապետությունն է եղել, որքան նրանց տգիտությունը և անմիաբանությունը:

*Մովսես ԲԱՂՐԱՄՅԱՆ*

* Ա՜խ լեզուն, լեզուն. լեզուն որ չըլի, մարդ ընչի՞ նման կըլի... Ձե՛զ եմ ասում, ձե՛զ, հայոց նորահաս երիտասարդք, ձեր անումին մեռնի՛մ, ձեր արևին ղուրբա՛ն. Տասը լեզու սովրեցե՛ք, ձեր լեզուն, ձեր հավատը դայիմ բռնեցե՛ք:

*Խաչատուր ԱԲՈՎՅԱՆ*

* Ժողովուրդ հայոց, քու ազատությունդ քու ձեռքդ է ամեն բանե առաջ. Քու սեփական ուժիդ, քու զենքիդ մեջ:

*Հայրիկ ԽՐԻՄՅԱՆ*

* Կանտը, Ֆիխտեն, Հեգելը, որչափ էլ մեծ լինի նրանց ավանդը փիլիսոփայական մտքի զարգացման գործում, այնուհանդերձ, լուծում էին իրենց ազգային խնդիրները:

*Միքայել ՆԱԼԲԱՆԴՅԱՆ*

* Եթե բոլոր մայրերը այնքան հայրենասեր և ազգասեր լինեն, որ իրենց զավակների հետ մայրենի լեզվով խոսեն, նրանց սրտի մեջ ազգային պատվասիրություն ձգեն, հայրենիքի սեր, էլ այնուհետև ի՞նչ մահ կարող է սպառնալ մեզ:

*Ղազարոս ԱՂԱՅԱՆ*

* Շատ անգամ ոչինչ չասող խոսք մը նշանավոր մարդու մը բերնեն ելած ըլլալուն համար իբրև պատգամ կընդունվի, և շատ անգամ նշանավոր խոսք մը աննշան մեկե մը ըսված ըլլալուն համար կարևորության չառնվիր:
* Դժբախտաբար մեր ազգին մեջ շատերու բարձրանալուն գաղտնիքը բնական օրենքներով միայն կլուծվի. Ծանրերը միշտ գետնաքարշ կմնան ու թեթևները վեր կելնեն:
* Մեծ անվանց ներքև հաճախ պզտիկ բաներ կպահվին:
* Ով շողոքորթություն... Ամեն տարիք կսիրե քեզ:
* Կեղծ բարեկամները արևու ժամացույցի կը նմանին, երբ օրը պայծառ է՝ կը տեսնվին, երբ ամպոտ է՝ չեն տեսնվիր:

*Հակոբ ՊԱՐՈՆՅԱՆ*

* Մեծ հեղինակությունները չեն կրնար ուսման ու կրթության տարածումին շնորհիվ կարճ ժամանակամիջոցի մեջ առաջ գնալ: Ջերմոցի մեջ կարելի է շուտով պտուղ ու ծաղիկ հասցնել, բայց ոչ կաղնի:

*Արփիար ԱՐՓԻԱՐՅԱՆ*

* Ինչ-որ տեղ, ինչ-որ բան այնպես չէ...

*Վիլյամ ՍԱՐՈՅԱՆ*

* Ո՜վ մարդկային արդարություն, թող որ թքնեմ քո ճակատին:

*ՍԻԱՄԱՆԹՈ*

 Չ24

---

14Չ

հասնելու համար մարդկությունը մեկ լեզու և մեկ կրոն պիտի ունենա, ստեղծել էր մի համաշխարհային լեզու, որն անվանել էր Սահլերա, իսկ բերդն էլ նույն լեզվով կոչել էր Այզերադանտ «Տաճար իմաստության»: Հրատարակել էր այդ լեզվի այբբենարան, քերականություն ու բառարան:

Ծայրաստիճան բարի մարդ էր, միանգամայն դեմ էր սպանությանը, այդ պատճառով հրաժարվել էր մսեղենից և սնվում էր բացառապես բուսատեսակներով: Անգամ կոշիկ չէր հագնում, որովհետև դա պատրաստված էր սպանված կենդանու կաշվից: Սաստիկ ատում էր կանանց և նրանց մուտքը բերդ արգելել էր:

Կանխազգալով մահը, 1881 թ. Պետրոս Թրնկըրը փորել էր գերեզման, պառկել մեջը և հոգին ավանդել 88 տարեկան հասակում:

## Մեր հասարակական բարքերից
(հատված)

Ամենքը գիտեն, որ պ. Մանթաշյանի հաշվին բարձրագույն դպրոցներում սովորում են շատ ուսանողներ:

Տարիներ առաջ (1895 թ.) պ. Մանթաշյանի ամուսնության 25-ամյակի առթիվ տեղի է ունենում տոնախմբություն: Բնական է, մարդկային զգացումը պիտի թելադրեր, որ այդ ուսանողները իրենց հոգևոր ծնողի ընտանեկան տոնին մասնակցեին գոնե մեկ-երկու բառ հեռագիր հղելով: Բայց ո՜չ, քննադատվում է տոնախմբվողը, իսկ նրանից բարերարվածների մեծագույն մասը բողոքում ու չի մասնակցում շնորհավորանքին:

Մեկնաբանություններ հարկավո՞ր են:

Անշուշտ, հարկ չկա նման անթիվ փաստեր արձանագրել շարունակելը, որպեսզի առանց տատանվելու բոլորն էլ ասեն այո, հայը ապերախտ է, հայը քծնող է:

Այս տողերի շարժառիթը այն կատակերգությունն է, որ վերջին օրերս հայությունը խաղում է այն պատճառով, որ պ. Մանթաշյանը գտնվում է Թիֆլիսում: Եվ վերջինս, որպես անակնկալ վերաքննիչ, անշուշտ, շատ բացասական տպավորություն կկազմի շատախոս, սնապարծ, ամեն ինչ քայքայող, այլանդակող և նսեմացնող արդի հայ գործիչների մասին:

*Տ. ՆԱԶԱՐՅԱՆ*
*«Տարազ», 1910 թ.*

*Էջի հեղինակ՝ Խաչատուր ԴԱԴԱՅԱՆ*



# Գագիկ Արամայիսի ԱՆՏՈՆՅԱՆ

Ծնվել է 1954 թ. ապրիլի 1-ին, Երևանում: Միջնակարգ կրթությունն ստացել է Վանաձորի Սունդուկյանի անվան թիվ 8 դպրոցում: Վանաձորի մանկավարժական ինստիտուտն ավարտելով 1974 թ-ին՝ հայոց լեզվի և գրականության ուսուցիչ է աշխատել Թումանյան քաղաքի միջն. դպրոցում: 1978 թ.-ից մինչև 1984 թ. տեսուչ է աշխատել Թումանյանի շրջժողկրթբաժնում, ապա՝ տեսուչ և հայոց լեզվի, գրականության ուսուցիչ Վանաձորի առևտրատնտեսագիտական տեխնիկումում: Հրավիրվել է քաղաքային «Կայծ» թերթի խմբագրություն /հետագայում՝ «Վերածնունդ»/, նշանակվել նամակների բաժնի վարիչ: Գրչակից ընկերների հետ ստեղծել է կոոպերատիվների միության «Այգ» թերթը /1989-90 թթ./, եղել է «Արփի» անկախ թերթի խմբագիր /1999 թ./: Այժմ աշխատում է «Հայաստանի Հանրապետություն» օրաթերթում՝ Լոռու մարզի սեփական թղթակից:

2012 թ. ստեղծել է «Կանաչ Լոռի» բնապահպանական, բնագիտական ամսագիրը:

1992 թ. լույս է տեսել նրա երգիծական պատմվածքների առաջին՝ «Ընկեր-պարոններ» խորագրով ժողովածուն, 2010 թ.-ին «Հրատապ երգիծանք» երգիծական պատմվածքների, նովելների, դրամաների ժողովածուն, 2011 թ.-ին՝ «Եվ մի բուռ երախտավորներ» հրապարակախոսական հոդվածների, դիմանկարների ժողովածուն: Երգիծական ժողովածուներում ներկայացված են հեղինակի երգիծական նովելները, պատմվածքները, հումորեսկները, մենախոսությունները, երկխոսությունները: Խոսքն ու ասելիքն ընդգրկուն են՝ կենցաղային աննշան թվացող մանրուքներից մինչև քաղաքական երանգներ, ընչաքաղցության, բյուրոկրատիզմի, մարդկային այլ թուլությունների ծաղրում, կամ, պարզապես անբռնազբոս կատակ և հումոր: Ժողովածուն երգիծաբանի վերաբերմունքն է մերօրյա հասարակական զարգացումներին, կենցաղին, մեր վարքուբարքին ու նիստուկացին:

Անտոնյանը նաև դրամատուրգ է: Նրա «Քաջ Նազար հազարերորդի 2000-րդ այցը» կատակերգությունը 1996 թ. բեմադրել է Վանաձորի «Բոհեմ» կամերային թատրոնը, իսկ «Ձեր տղային մեր աղջկան տվեք» կատակերգությունը՝ 2010 թ. բեմադրեց Վանաձորի Հովհաննես Աբելյանի անվան պետական դրամատիկական թատրոնի ռեժիսոր Ջանիկ Ավետիսյանը, որը ներկայացվել է Լոռու մայր թատրոնի բեմում, Վանաձորի Շարլ Ազնաուրի անվան մշակույթի պալատում, Ստեփանավանում: Եվս 11 դրամաներ, կատակերգություններ սպասում են իրենց բեմադրողին: Ընթերցողները, գրչակից ընկերները նշում են, որ Գագիկ Անտոնյանի գրչին հատուկ են խոսքի դիպուկությունը, պարզությունը, հումորի նուրբ զգացողությունն ու ժողովրդական բառ ու բանի բույրով համեմված ասելիքի գունագեղ պատկերավորումը:

# Հարցազրույց՝ ծննդյան օրվա առիթով

– ***Ձեզ ճանաչում են նաեւ որպես Գագիկ Հրատապ: Ինչո՞ւ Հրատապ:***

– Երևի նրա համար, որ ամեն ինչ սիրում եմ արագ, հրատապ կատարել: Երկրորդ ժողովածուն էլ ընկերներիս խորհրդով կոչեցի «Հրատապ երգիծանք»:

– ***Ինչպե՞ս պատահեց՝ լրագրող, երգիծաբան, դրամատուրգ:***

– Երբ 4 տարեկան էի, հայրս ինձ համար կարդաց Թումանյանի ստեղծագործություններից: Այդ օրից ծնողներս կրակն ընկան. խնդրում էի, որ կարդան ու կարդան: Բազմաթիվ պոեմներ անգիր գիտեի: Մի օր հյուր եկած հորեղբորս համար գիրքը բացած, մատներս տողերի վրա սահեցնելով, իբր, կարդում եմ «Աբջաորսը»: Հասկացա՝ հայոց տառերը ճանաչում եմ: Հետո սկսեցի կարդալ, միջին դասարաններում՝ գրել: Երգիծական մանրապատումներ տպագրվեցին «Ոզնի» ամսագրում... Շրջադարձային էր «Կայծ» թերթին ծանոթությունս: Արմեն Ծովակ, Նարեկ Մեսրոպյան, Սամվել Խալաթյան՝ այն ժամանակվա լրագրության արվեստի խոշոր դեմքերը, որոնց գրիչը նաև երգիծական հումորի երանգներ ուներ, մեծապես ուղղորդեցին լրագրության ասպարեզ, երգիծանքի կախարդական աշխարհ:



– ***Ինչի՞ց եք դժգոհում:***

– Ոչնչից: Հաշտ եմ: Եթե մարդ ժամանակ ունի դժգոհելու, նշանակում է՝ կարող է ժամանակ գտնել նաև դժգոհության պատճառը վերացնելու:

– ***Երեւի հարուստ մարդ եք:***

– Մարդ որքան շատ նյութական կարողություն ունի, այնքան շատ է դողում հնարավոր կորստից: Դա էլ նրան կատարելապես դժբախտ է դարձնում: Հարուստ եմ իմ ընկերներով, հարազատներով:

– ***Դուք հպա՞րտ մարդ եք:***

– Հպարտ եմ, որ հայ եմ, որ Դսեղցի եմ: Ճիշտ է՝ ծնվել եմ Երևանում, ապրել ու ապրում եմ Վանաձորում, բայց հայրս դսեղցի է, մանկությանս շատ ամիսներ անց եմ կացրել գյուղում, տատիս հետ սար եմ գնացել: Ես ինձ համարում եմ դսեղցի: Դսեղը Տիե-

⊃17

# Հավատարիմ լրագրությանն ու գրագրությանը

Լրացավ վաստակաշատ լրագրող, երգիծաբան, արձակագիր և դրամատուրգ Գագիկ Անտոնյանի ծննդյան 60-ամյակը:

Ճիշտ է ասված՝ նվիրումը էությունն է, սիրած աշխատանքը՝ մասնագիտություն ողջ կյանքի համար:

*– Ուզում եմ, որ գրիչս ձեռքիցս չընկնի, որ գրիչս երբեք «բրիչ» չդառնա: Զգամ ինձ, բոլորիդ, բայց ոչ վատ: Առավել սիրեմ Հայաստան աշխարհը՝ հուսալով, որ նա էլ մեզ կսիրի: Թող խաղաղություն լինի, որ հանգիստ խղճով կատակենք, սիրենք, երազենք...*

Ահա այսպիսին է Գագիկ Անտոնյան մարդ-տեսակը: Նրա խոսքն ու ասելիքը ընդգրկուն է՝ կենցաղային, աննշան թվացող մանրուքներից մինչև քաղաքային երանգներ, բյուրոկրատիզմի, մարդկային այլ թուլությունների ձաղկում կամ անբռնազբոս կատակ ու հումոր: Կյանքի զանազան երևույթների նկատմամբ իր որոշակի հայացքն ունի, ուր էականը մարդ անհատի լինելիության, գոյության իմաստի և ապրելու կերպի խնդիրն է:

Գագիկ Անտոնյանը փորձում է գտնել, իր համար որոշակիացնել, այնուհետև զգացածընկալածը ներկայացնել ժողովրդին ու ակնկալել, որ հնչեցրածը կհասկանան ու կգնահատեն:

Նրա գրիչը երբեմն սուր, երբեմն չափազանց տեսանելի է դարձնում այն, ինչը խանգարում, կոշտ խրվում է մեր կյանքի ներդաշնակության մեջ, ցույց տալիս մեր կյանքում տեղ գտած կոմիզմը:

Իրեն հատուկ խոսքի դիպուկությամբ ու պարզությամբ Գագիկ Անտոնյանը ապացուցում է, որ իսկական կատակները մեծ մասամբ շատ լուրջ են: Երևի թե այստեղից էլ գրողի մեջ ծնունդ են առնում համարձակ ու արտահայտիչ փոխհարաբերություններ՝ հիմնված ինքնատիպ ու սրամիտ մերձեցումների վրա:

Դե իսկ նրա գտած կերպարները միտքը դարձնում են առավել սուր, կոնկրետ ու տեսանելի:

Ահա մշակույթի ջատագով մարդու՝ Սամվել Խալաթյանի համոզմունքը, որը բնագավառի «դարբնոցում» բարձր է գնահատում մտավորականի ստեղծագործ ուժը.

*– Գագիկ Անտոնյանը նոր անուն չէ գրականության ու լրագրողական անդաստանում: Ավելի քան 40 տարի նա լրագրության ասպարեզում է, և նրա տասնյակ* հարյուրավոր հոդվածներից յուրաքանչյուրն իր դրական դերակատարությունն է ունեցել մեր հասարակական կյանքում: Նրա գրիչը նույնքան բեղուն ու պերճախոս է գեղարվեստական խոսքի մեջ:

Դրամատուրգիայի ասպարեզում էլ Գագիկ Անտոնյանի գրիչը բեղուն է: Նրա «Քաջ Նազար հազարերորդ», «Ձեր տղային մեր աղջկան տվեք» կատակերգությունները, որպես սկիզբ խոստումնալից են ու օժտված գեղարվեստական հատկանիշներով, տեղ են գտել Վանաձորի Հովհաննես Աբելյանի անվան պետական, «Բոհեմ» կամերային թատրոնների խաղացանկում, Ստեփանավանում:

Փայլուն երգիծական հնչեղության է հասնում Գագիկ Անտոնյանը՝ օգտագործելով մերօրյա հասարակական զարգացումները, կենցաղը, մեր վերաբերմունքն ու նիստուկացը:

Հրատապ անդրադառնալով իրադարձային դեպքերին ու անցքերին՝ փնտրում, գտնում է անցողիկի մեջ անանցողիկը, գրում է առանց որևէ պարտադրանքի, գրում է սիրով ու համոզմունքով:

***Լևոն ԽԱՉԱՏՐՅԱՆ***
*«Գործարար» ամսագրի Հայաստանի ներկայացուցիչ*

**«Գործարար» ամսագրի ստեղծագործական խումբն էլ, միանալով սփյուռքում ապրող մեր բազմահազար հայրենակիցներին, շնորհավորում է շնորհաշատ մեր գործընկերոջը, ցանկանում երկար ու բեղմնավոր կյանք:**

***16*** ➲ **Հարցազրույց՝ ծննդյան օրվա առիթով**

զերքի կենտրոնն է: Ձմռանամ՝ Դսեղը Հայաստանում է: Ահա ինչու Հայաստանն էլ ՏԻԵԶԵՐՔԻ ԿԵՆՏՐՈՆՆ է:

***– Տպագրված գրքերը կարծես թե քիչ են:***

– Երգիծական պատմվածքների, նովելների, 15 պիեսների, հրապարակախոսական հոդվածների մի քանի ժողովածուներն ինձ հետ համբերատար սպասում են լույս աշխարհ գալուն: Լսողը կասի՝ բեղուն գրիչ ունի, մինչդեռ, ինչպես երգիծաբանն է ասել՝ «եթե բեղուն կնիկ լինեի՝ դրանք վաղու՜ց տպագրված կլինեին»:

***– Դուք Ձեզ երջանիկ համարո՞ւմ եք :***

– Երջանկությունը իզուր երջանկություն չփնտրելու մեջ է: Ավելին տենչալու երազանքն այն բանի ապացույցն է, որ մարդ անբավական է այն ամենից, ինչ ինքն ունի, ինչ Աստված տվել է իր ցանկությամբ: Ուրախ անցիր, անհոգ անցիր երկու օրվա «էս ճամփեդ»:

***–Ի՞նչ խորհուրդ կտաք երիտասարդներին:***

– Խորհուրդ տալն ամենահեշտ գործն է, որ ես չեմ սիրում ու ոչ ոք չի սիրում: Ամենալավ խորհուրդը կյանքով պիտի տաս: Ես, օրինակ, սիրում եմ աննկատ ապրել: Աննկատ էլ մարդկանց օգնության հասնել... Ոտքերս, ձեռքերս անկողնուց դուրս չեմ հանում, մտածելով, որ դեռ ժամանակը կգա՝ ոտքերը ձգելուց հետո դա անել:

***– Մահից վախենու՞մ եք:***

– Մտորելու ժամանակ չեմ ունեցել: Կարծում եմ՝ բոլորը գիտեն, թե ինչ բան է մահը, բայց բոլորին թվում է, թե մահն այն է, ինչ կատարվում է այլոց հետ:

Դրսում գլորվում է 2014 թվականը: Ապագան մեզ վրա արշավում է տիեզերական արագությամբ: Տարիների հետ հասկացա շատ բան: Հասկացա, որ շատ բան դեռ չեմ հասկացել:

***– Ըստ ձեզ՝ ո՞րն է կյանքի իմաստը:***

– Իմաստուններն ու փիլիսոփաներն անգամ այդ հարցի պատասխանը չեն տվել: Եթե օրերից մի օր հայտնի դառնա, թե ինչու է մարդն աշխարհ եկել, որն է նրա առաքելությունը, ինչու են ապրում, ժառանգներ թողնում, ի վերջո՝ այս աշխարհից հեռանում, պարզ կլինի կյանքի իմաստը: Կարծում եմ՝ հարցերի պատասխանը մարդկությանը դեռ շատուշատ դարեր են հարկավոր պարզելու համար: Մարդկությունը հենց այդ առեղծվածը բացահայտելու վրա էլ տքնում է:

***– Ինչի՞ց եք ամենաշատը վախենում:***

– Խելահեղությունից, խելահեղներից, նրանցից, ովքեր կոնֆլիկտներ ու պատերազմներ են հրահրում: Այսօր միջազգային հանրությունը համաշխարհային նոր պատերազմի շեմին է. ամենատարբեր անկյուններում մարդկային անմեղ զոհեր, ավերածությունների բոցն է հուրհրում: Աշխարհի բարիքները չեն կարողանում բաժանել իրար մեջ, թեև ամեն ինչ վաղուց «փայ-փայ» են արել: Ուզում են հիմա էլ «վերափայավորել»: Է՜, հազարավոր դարերի ընթացքում մարդակեր մարդը հազիվ է դարձել մարդասպան: Ու նմանների «շնորհիվ» երկիր մոլորակից այսօր ավելի շատ վառոդի հոտ է գալիս, քան վարդի:

***– Դժվա՞ր է լրագրողի, երգիծաբանի գործը:***

– Հա: Օրինակելի մարդկանց մասին դրական գրես, թե արգահատելի երևույթների մասին՝ ֆելիետոն, մեկ է՝ նեղացողների բանակը շատ է: Նկատել եմ՝ երբեմն բարի գիրն ու գործը բոլորովին չեն ներվում: Իսկ ֆելիետոնների շատ հերոսների հետ եղել է, որ հաստատել ենք ընկերություն: Մի սկզբունք փորձել եմ մշտապես պահպանել՝ ոչ մի անձնական վիրավորանք դիմացինին, մարմնական որևէ արատ ի ցույց չդնել, գրիչն ի չարը չօգտագործել: Ասելիքը, հումորը, անգամ սատիրիկ բնույթ ստանալու դեպքում, պետք է սուր լինի, բայց և՝ նուրբ լինի:

Երբեմն հանդես գալուց առաջ այնքան եմ տալիս ու առնում, որ վերջում ... լռում եմ: Էսպես է՝ կասկածներ ունես՝ մի արա, արեցիր՝ մի կասկածիր:

***– Ի՞նչ սպասելիքներ ունեք կյանքից: Ինչ կցանկանաք ընթերցողներին:***

– Ուզում եմ, որ գրիչը ձեռքիցս չընկնի: Որ գրիչս երբեք «բրիչ» չդառնա:

Զգամ ինձ, բոլորիդ, բայց ոչ վատ: Առավել սիրեմ Հայաստան աշխարհը, հուսալով, որ նա էլ մեզ կսիրի: Թող խաղաղություն լինի, որ հանգիստ խղճով կատակենք, սիրենք, երազենք: Գետերը գաթա չեն բերում, թող պապիկները բերեն:

Թող մեր երկիրը կայուն զարգացող ճգնաժամից օր առաջ դուրս դա:

Շա՞տ բան եմ ուզում: Եթե այո, հերթը Ձերն է՝ դուք ուզեք:

*Իրական պատմություն*

# Սարատով Մոսկովիչը, «Վոլգան» եւ Մաքսային Միությունը

Հանդիպեին ու չվիճեին-չկռվեի՞ն:

Այնպես էին տաքանում, իրար այնպես վիրավորում, կասեիր՝ արյունահեղությունն անխուսափելի է: Ու եթե մինչև օրս քարով, փայտով իրար գլուխ դեռ չեն ցխել, խոսում է նրանց՝ քաղաքակրթության մարմնացում լինելու մասին:

Վեճ-վիճաբանության թեման էլ գոնե մի թեմա լինե՜ր: Սարատով Մոսկովիչ Հախատուրյանի ծեր մայրը մի անգամ փորձեց նախատել որդուն, ով ընկերների հետ հերթական դալմադալից հետո տուն էր աճապարել ընկճված սրտով ու տխուր մեկնվել կոտրած թախտին:

– Այ որդի, էնպես ես աքլորանում, ոնց որ աշխարհի վերջը եկել է: Ախր մեջն իսկի նյութ չկա, է՜, նյու՜թթթ...

Ձայն-ծպտուն չհանեց: Մորը թվաց, թե նախատինքն իր ներգործությունն է թողնում, շարունակեց. «Ավելի լավ չի՞ լինի՝ մի գործի մտնես, հազար պակաս-պռատի տեր ենք»: Հախատուրյանների տոհմի անկոտրում ժառանգորդը վերջին մտքի հետ անհամաձայնությունը կտրուկ արտահայտեց. «Այ մեր, բա դու ուրիշ բանուգործ չունե՞ս, գործիդ կաց, էլի՜»:

Մայրը ցավոտ տեղին էր կպել: Հաստոցաշինական գործարանի նախկին հմուտ խառատ որդին աշխատանք փնտրելու ավելի քան 25 տարվա փորձ ուներ: Բացի այդ, տղերքն այդ օրը նրան անչափ էին նեղել:

Կրակին յուղ չավելացնելու համար ծեր մայրը լռեց ու մի կողմ քաշվեց: Որդին իր համար, բավարարված, միայն մռլտաց. «Դրանց, տեսեք, թե ո՞նց եմ կուռկուռի ձագ սարքելու: Օրը գա՝ բարին հետը»:

Բայց օրերը գալիս-անցնում էին, հետները բարուն չէին բերում:

Ամեն ինչ սկսվեց այն օրը, երբ ընկերներից մեկը Գերմանիա տեղափոխված որդուց նվեր ստացավ «նրբակազմ» մի ավտոմեքենա: Առիթը քեֆի էր արժանի: Երբ հերթը հասավ մեքենայի կենացին, Սարատովի մոտակայքում ֆաշիստական գնդակից վիրավորված և հրաշքով կենդանի մնացած Մոսկով հոր որդին բաժակն արհամարհանքով մի կողմ հրեց՝ էդ ոջիլի կենացն ինքը չի խմի: Փորձեցին համոզել՝ ի՞նչ ոջիլ, ի՞նչ բան, գեղագիտական տեսանկյունից ավտոն, ինչ խոսք, անթերի ավտո է, մարդիկ հիմար հո չե՞ն, որ դրան են «թամահ» անում: Հոր միահեծան կամքով իր էկզոտիկ անունն ստացած Սարատովը, ասացինք, անկոտրում մարդ է, համոզված նետեց. «Հիմար չեն, բա ի՞նչ են: Որ հիմար չլինեն՝ էդ տեսակ ավտո կառնե՞ն»:

Հետաքրքրվեցին՝ բա ի՞նչ առնեն, ո՞րն է իսկական ավտոն: Սարատով Մոսկովիչն էլ հենց այդ հարցին էր սպասում, անմիջապես մեխեց՝ «Վոլգան»:

«Վոլգա» ասելիս նրա քիմքով մեղր էր ծորում, սիրտն ուռչումփքվում էր, ոնց որ նրբերշիկը եռման ջրում: Երբեմն նաև ճաք էր տալիս:

– Բա՞ն գտար, ռսի տապոռով տաշած ավտոն է՞ ավտո, – ընդիմացան ընկերները:

Առաջին անգամ ասացին-խոսեցին, տվին-առան՝ «Վոլգան» իհարկե դիմացկուն մեքենա է, մեր ճանապարհներին հարմար է, համա թե՝ կոշտուկոպիտ է, անճոռնի է, բա վառելիքի ծա՞խսը, ծարավ գոմեշի պես խմում հա խմում է, դրա «ռեխն» իսկի պահել չի լինի:

Սարատով Մոսկովիչը ոչ մի հիմնավորում չընդունեց, գլխացավը չբռնելու համար բոլորին «հուսադրեց». «Ժամանակը գա՝ կապացուցեմ: Ավտոն միայն «Վոլգան» է»:

Շուտով նա հնարավորություն ստացավ ապացուցելու իր համար աքսիոմատիկ այդ ճշմարտությունը: Գերմանական արտադրության «նրբակազմ» մեքենան շուտով խափանվեց: Որպես մեքենայի իսկական բժիշկ՝ օգնության կանչեցին Սարատով Մոսկովիչին: Մտավ մեքենայի տակ, մտիկ տվեց, քննեց ու հայտնաբերեց փչացած դետալը: Ու երբ ասացին այդ դետալի՝ մեզ համարահռելի գինը, վարպետի սիրտն ընկերոջ համար մղկտաց. «Բա որ ասում եմ՝ ավտո չի՞: Կնկա նման զադ է, փռշտաս՝ շունչը կփչի: Քանի շուտ է՝ ծախեք՝ պրծեք»:

Ի՞նչ ծախել-պրծնել: Դեռ ինքը պիտի այդ մասին մտածեր: Տարիների ընթացքում մյուս ընկերները ևս ձեռք բերեցին նմանատիպ ավտոմեքենաներ, ու այժմ միահամուռ ուժերով ու փաստարկներով էին նեղը գցում մարդուն: Ժամանակի հետ վեճերն ու վիճաբանությունները շեշտակի բնույթ ու վտանգավոր սրացումներ էին ունենում, արդեն իրար լավ էլ վիրավորում, ծաղրուծանակի էին ենթարկում: Վերջին անգամ Սարատով Մոսկովիչին այնպես նեղեցին, այնպես ձեռք առան, որ վարպետը գործիքները պնդաճակատների երեսին չիջեցրեց միայն և միայն երկար տարիների ընկերության խաթրու: Բայց գործիքները դեն նետեց, փոսից դուրս եկավ ու հայտարարեց. «Գնացեք՝ ձեր խնջիլքը ինքներդ սարքեք»: Մեկ տարուց ավելի նրանց հետ չէր հանդիպում, տեսնելիս՝ ճանապարհը թեքում էր, խռովել էր: Ո՞վ չէր խռովի: Հրեն՝ ավտոտնակում իր մեքենան, ոչ՝ իր կխտարը, միշտ սարքին, իր կամքին հնազանդ, կազմուպատրաստ կանգնած է, բայց արի ու տես, որ անիրավները «հանգուցյալ» բառով են պատվում, ձեռք են առնում՝ հարգում ենք «Վոլգայիդ» պայծառ հիշատակը: Դե, եթե հանգուցյալ չի՝ քշի, էլի, մեկ անգամ քշի, բարուրել ես, հետն էլ ուզում ես, որ մի անգամ փչանա՞...

Հասկանալ կարելի է մեր նեղություն քաշող ընկերոջը. աշխատանք չունի, մեքենան ո՞նց օգտագործի, բա դրա «ռեխը» պահե՞լ կլինի: Անհնար բան է: Դրա համար էլ իր կխտարին կանգնեցրել է ավտոտնակում, պետահարանիշերը 25 տարի առաջ հանել, տարել հանձնել է պատավտոտեսչությունում, որ տույժ ու տուգանք չգա, բայց երբեք չկորցրեց հույսը, թե մի օր հանելու է իր սիրելիին, և միասին սուրալու են ծաղկաբույր դաշտերի հողոտ ճանապարհներով: Ամեն առավոտ այցելում էր Նրան, փոշիները հանում էր փափուկ շորով, շաբաթը մեկ անգամ տակից-գլուխ «մանրակրկիտ» լվանում էր, տարին մեկ փոխում էր շարժիչի յուղը, քսայուղում էր ժանգոտող դետալները, 5 տարին մեկ՝ հակակոռոզիոն նյութով ներկում էր հատակը, 10 տարին մեկ անգամ էլ շարժիչն էր քանդում, նորեն հավաքում: Բանալիի մեկ պտույտ, և մեքենան հռնդում էր: Ոչ՝ գեղգեղում էր անուշ, համաչափ: Երբ սովում էր, ձեռքը դնում էր թափքին ու մեղավոր աղերսում.«կներես, ախպեր, կգամ»: Հայտնի բան է՝ խաբուսիկ է հույսը, բայց կյանքի մայրամուտին անգամ մարդիկ չեն կորցնում այն, կարծելով՝ երանելի հանգրվանը հեռու չէ: Ի՞նչ բան է մահը: Բոլորը գիտեն: Բայց գիտեն, թե դա այն է, ինչ պատահում է այլոց հետ:

Մեկ տարին մեկ ակնթարթի պես անցավ: Լրացավ Սարատով Մոսկովիչի 65-ամյակը: Կնոջ հետ արժևորում էր պատմական փաստը, երբ էկրանին հայտնվեց նրա չսիրած հաղորդավարուհին:

– Գիտես՝ էդ սրադուդ ալրաթաթախին տանել չեմ կարող, ալիքը փոխիր, – հրամայեց կնոջը:

Ի՞նչ կկորցներ պարոն Հախատուրյանը, մենք էլ շատ բան կկորցնեինք (պարզապես, պատմվածք չէր ստացվի), եթե նրա կինն էլ, բոլոր կանանց պես, ականջի ետև չգցեր ամուսնու հանձնարարությունը: Սարատով Մոսկովիչը ականջի ծայրով որսաց վաղուց սպասված լուրը և հասկացավ, որ իր ծննդից առավել նշանակալից իրադարձություններ էլ կարող են պատահել այս անցողիկ աշխարհում. «Հայ-եվրոպական բարեկամության մոլեգին շփումների արդյունքում՝ հայերս որոշեցինք անդամակցել Մաքսային Միությանը»: Նա ասես 50-60 տարով ջահելացավ, տեղից թռավ և Խորհրդային պիոների պես «ուռա՜» գոռաց: Քիչ անց հենց հողաթափերով էլ ընկերներին հասավ: Հերթական խափան մեքենայի մոտ տղաներն անհույս կանգնած՝ մտորում էին՝ ո՞նց կանչեն վարպետին, ախր շատ են նեղացրել, է՜...

Վարպետը զարմացական հայացքների ներքո առաջ եկավ, բոլորին ոտքից-գլուխ չափեց, արհամարհական ասաց. «Հապա մի շարվեք»: Շվարած՝ շարվեցին:

– Այ կուռկուռի ձագեր, տեսա՞ք ճիշտն ով է... Հաղթեցի՜նք...

Վախվորած հարցրեցին՝ ովքե՞ր հաղթեցին:

– Ես հաղթեցի: «Վոլգաս» հաղթեց, ոջլոտներ...

Հոմերական ծիծաղի մասին ոչինչ չենք ասի: Բայց ո՞վ էր այդ ծիծաղը բանի տեղ դնողը: Սարատով Մոսկովիչը հաղթանակած հեռացավ: Գնաց ավտոտնակ: Կարոտով փարվեց իր հին, անխոս ու լուռ, միշտ կազմուպատրաստ ընկերոջը: Սիրտը խաղաղ էր՝ տղերքի պորտները ոնց որ պետք է՝ տեղն է դրել:

– Դու ուրիշ ես, ախպեր, – նվաղուն ձայնով ասաց նա, ու ձեռքը երկար պահեց ազդանշանի կոճակին: Նա իր ողջույնը հղեց ՄՄ-ին միանալու որոշումն ընդունած իր հայրենակիցներին: Ապա կնոջից տաք ջուր պահանջեց ու այդ օրը առանձնակի սիրով, ջերմությամբ լվաց կխտարին՝ չխնայելով ոչ մատները, ոչ էլ իրեն:

***Գագիկ ԱՆՏՈՆՅԱՆ***

# Սուր գրիչ՝ բութ բաների դեմ

## Արտագաղթ-անկախությունն ու հայը

«Անկախության գաղափարը մեծ երազանքի էր նման՝ անմատչելի, գրեթե աննյութեղեն, անըմբռնելի ու անշոշափելի: Սակայն օրերից մի օր բռունցքվելու ելած ժողովրդի արդար կամքով մեծ երազն իրականության վերածվեց:

Եկավ անկախությունը ոգեղեն ու բռնկումի, ուրախության ու ցնծումի ալիք առաջ բերեց համայն հայության շարքերում: Օտար ափերում դեգերող հայության աչքին ուրախության և առ Աստված օրհնանքի արցունք ու շրջյուն արձանագրվեց: Սակայն, ավաղ, մեր սխալներով ու աններելի վրիպումներով անկախության երազը իրողության վերածվելու կոնկրետ, իրական այս գործընթացում խոշոր ճաքեր տվեց, մեծ ու փոքր խոտորումներ եղան, և էական շեղումներ ու պարտություններ արձանագրվեցին մեր նոր ճանապարհին: Չափանիշներ փոխվեցին, ու իդեալներ փշրվեցին, հերոսներ ոտնատակ եղան:

Ու ժողովրդի կասկածն ու տագնապն ահագնացան: Նյարդային, հոգեկան ու նյութական ահավոր լարվածության տակ կքած շատերը բռնեցին դյուրին մի ճանապարհի՝ արտագաղթի ճանապարհը:

Անկախություն և արտագաղթ...

Եվ մեր հավաքական մեծ երազը լիովին փշրվելու ռեալ սպառնալիքի ներքո է գտնվում:

Յո՜ երթաս, հայ ժողովուրդ:

Ու՞ր պիտի փախչես քո բախտից, քո ճակատագրից, քո հազարամյա խռովահույզ պատմությունից:

Հիմա բռնել ենք անհիշողության ուղին: Կարծես ո՛չ նախահայր-նախակարապետներ ունենք, ո՛չ ազգի հայրեր ու մեծեր, ո՛չ նահատակներ ու հերոսներ:

Ո՛չ պատմություն, ո՛չ հիշողություն:

Անկախություն և արտագաղթ...

Որն է հաղթելու:

Բոլորս գիտենք, նաև չգիտենք:

Սակայն, բոլոր դեպքերում, մեծն երազն արհամարհել պարզապես անկարելի է:

Անկարելի է ազգովի արհամարհել հայրենիքը, լքել ու հեռանալ: Անկարելի է»:

*Արմեն ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*

## Սերն ու հայը

«Ահա երկու բան, որ սակավ են Հայաստանում կամ ամենևին չկան: Ընդ որում, մեկի գոյությունը կամ չգոյությունը պայմանավորված է մյուսով. սեր չկա, որովհետև հայ չկա Հայաստանում, և հայ չկա, որովհետև սեր չկա Հայաստանում:

Իսկ միգուցե սեր չկա, որովհետև հա՞յ չկա: Որտե՞ղ կարող ես գտնել հայի: Ոչ մի տեղ:

Կան սովետահայ, ֆրանսահայ, հրեահայ, արաբահայ, թրքահայ, չկա հայ: Կան Եհովայի վկա հայ, մորմոնահայ, քրիստոնյա-դեմոկրատ հայ, հանրապետական ու դաշնակցական հայ: Ինչպե՞ս կարող է հիսունական հայը սիրել Քրիստոսի վերջին օրերի վկա հային, ինչպե՞ս կարող է ախմականը սիրել սիմականին: Արգելվու՞մ է: Արգելվում է, որ գյումրեցին սիրի ախալքալաքցու, ապարանցին ղարաբաղցուն: Երևանցին ոչ մեկին չպետք է սիրի: Մեզ համախմբում է ոչ թե սերը միմյանց նկատմամբ, այլ ատելությունը ուրիշի հանդեպ: Ահավո՞ր է: Մատղաշ կուսակցականներին արգելվում է կարդալ ուրիշ կուսակցությունների կամ չեզոք թերթեր. դաստիարակվում է ոչ թե հայ, այլ կուսակցական: Ամեն քայլափոխին ատելություն է սերմանվում: Փողոցում քայլում ես ու զգում այդ ատելությունը բոլորի մեջ: Բոլորն ատում են իրար, պատրաստ են հոշոտելու իրար, պաշտոնյան պատրաստ է պատառ-պատառ անելու ձեռքն ընկած մեկին, ոչ պաշտոնյան ցանկանում է հոշոտել նրան:

Եթե սեր չկա, էլ ի՞նչ ենք ուզում: Եթե մե՞նք չենք սիրում իրար, ապա ուրիշն ինչպե՞ս սիրի, ապա Աստված ինչպե՞ս սիրի մեզ: Ցանկանում եմ, որ Հայաստանում սերն ու հայը շատանան»:

*Վաչագան ՍԱՐԳՍՅԱՆ*

Եթե ուշքի չգանք, եթե դասեր չքաղենք, եթե ի վերջո չհասկանանք, թե ովքեր ենք մենք, ինչ ենք ուզում և ուր ենք գնում, մեր կյանքում ոչինչ չի փոխվի:

*Ձեզ հետ բութ բաների մասին խոսեց Լևոն ԽԱՉԱՏՐՅԱՆԸ:*

# ԱՄԲՈԽՆԵՐԸ ՍՏՐԿԱԼՈՒՅԾ

Ի՜նչ կրքեր են և ի՜նչ հուզում՝
Ազատության ցոլքերի մեջ այգաբացի...
Ամբոխները ստրկալույծ՝
Առանց հացի,
Առանց վարձի,
Կարոտախտով սպասում են
Մի մեռածի հոգեդարձին:
Եվ քանի որ էն աշխարհից
Դեռ ոչ մեկը ետ չի եկել,
Պարզ է՝ նրանց երազանքը
Հոգեվարքի վերջին ցնցումն է ջղաձիգ:
Եվ սզավոր թափորի պես,
Ուրվականի նման վտիտ,
Խփված, խաբված, ահագնացած՝
Շվարել են կատարվածից:
Ստրկալույծ ամբոխներից առանձնացած՝
Անչափ ճարպիկ ու աճպարար մի խումբ անձինք,
Դարձյալ մտոք ստրկալույծ,
Տիրանալով անդամալույծ
Օրենքների ահեղ սանձին,
Զարմանալով իրենց դիրքից,
Իրենց ձիրքից,
Իրենց խելքից,
Որպես անտեր երկրի տերեր հաղթանակած՝
Վայելում են տիրոջ արյունը սրբազան՝
Պալատների սրահներում արքայական,
Որտեղ անգամ երազի մեջ ոտք չի դրել
Սովորական
Մահկանացուն:
Եվ ոսկեզօծ բաժակների զրնգոցով՝
«Արիեստավարժ ըն-տըր-յալ-ներ» իրենց կոչող
Այրերը այդ
Խմում են արդ
Հաղթարշավը՝ հազարամյակը բոլորող
Վերջին դարի
Թասը թասի տաքանալով,
Հաղթանակում այդ պայքարի
Իրենց բազկի «հույժ կարևոր» դերը նշում
Եվ հաճույքով մի անթաքույց՝
Ի լուր ազգի մատնանշում,
Որ գալիս են առասպելից,
Ուղիղ գծով սերում են Հայկ նախապետի
Անպարտ ցեղից,
Եվ խաղ չկա իրենց հանդեպ...
Որ արյունոտ այս նենգ դարի շիրմաքարին,
Երբ դեռ եկող սերունդների հիշողության մատյաններում
Ոսկե տառով իրենց «պայծառ»
Անուններն են դաջել արդեն,
Ո՜վ կարող է իրենց շինած
«Սուրբ տաճարը» նորից քանդել...
Այսպես իրար թև-թիկունքի,
«Դաշն կնքած հավերժի հետ»,
Փուչիկի պես թեթև, թեթև՜
Բարձրանում են ու բարձրանում.
Ախր շատ են ստրկալույծ չեն հասկանում՝
Վերևներում
Թեկուզ որդուդ՝ չկա ներում.
Սայթաքելը կործանում է...
Իսկ ներքևում ամբոխները ստրկալույծ
Չեն իմանում՝ ինչ հրմշտոց է վերևում...
Միայն բույրից կերուխումի,
Որ նման է երազխաբի զրգռումի,
Զգում են, որ մթնոլորտը
Անհամեմատ ճոխ ու զեխ է ...
Մեկը մեկին տարակուսած հարց է տալիս.
«Խրախճանքը այդ ահավոր
Քե՞ֆ է ուրախ, թե՞ քելեխ է»:

*Նորիկ ՍԱՖԱՐՅԱՆ*

# Զրույց ընթերցողի հետ
# Կամ պատառիկներ Լիդա տատի օրագրից

***Ամեն մարդ պետք է իմանա իր ծնողների, իր անցյալը: Ես մանկության ու պատանեկության հասակից դեպքեր եմ հիշում, որոնք որոշ չափով բնութագրում են ծնողներիս և իմ ապրած ժամանակները: Դրանք գրի եմ առնում այնպես, ինչպես ես տեսել եմ, առանց գունազարդման և թողնում եմ այդ հուշերը իմ զավակներին:***

Այս տողերի հեղինակը՝ դսեղցի 79-ամյա Լիդա տատը (Լիդա Տիգրանի Անտոնյան) տարիների հեռվից հիշում է իր անցյալը: Տարիների մշուշոտ վարագույրը մի կողմ է փորձում տանել, և աչքերի առաջ հառնում են մանկությունն ու ապրած կյանքը (չնայած տարիները շատ բան են մշուշել): Ինչ-որ բանով զբաղվելու, ապրելն իմաստավորելու և արածը կարևորելու համար՝ մեկ-մեկ էլ թղթին է հանձնում մտքերը, ստեղծագործում, համով-հոտով խնդուկներ, մանրապատումներ հավաքում՝ այն համարելով իր մասնակցությունը կյանքին: Մեզ չի գործում, որ հայրենի եզերքի անցյալի մի բեկոր անգունազարդ հիշողություններն ու պատմությունները, մեզ որպես հուշ է թողնում: Ուշագրավ ու հետաքրքիր են տողերը մոր թողած սանդերքի ու ջահրանի մասին, որով բրդի փոքր փաթիլները թել էին դառնում, երկանքի մասին, որով հացահատիկ էին աղում, փայտե խանի՝ հացահատիկի չափը իմանալու համար, և այլն:

*– Դսեղ գյուղը մի պատմություն է, պատմություն, որ մեզ տանում է դսեղցիների հին ու նոր երազների, գյուղի բարդ, բայց և անկեղծ էության, հումորի ու առակների պատմություններին:*

*Ազնիվ մարդ ու մարդկային է դսեղցին,*
*Վարող-ցանող, աշխատասեր դսեղցին,*
*Ուտող-խմող, հյուրասիրող դսեղցին,*
*Զուննա էլ՝ աղուհացով դսեղցին:*

Անցյալ օրերի, դեպքերի, հին սովորույթների մասին զրույցը նույնն է, թե ճանապարհորդելը դեպի այդ օրերը, հաղորդակից լինել գյուղի կենցաղվարությանը, բարքերին ու ավանդույթներին, հետաքրքիր պատմություններին: Լիդա տատի մանկության ու պատանեկության տարիների հուշերի և հիշողությունների միջոցով ուրվագծվում է մի ամբողջ գյուղի՝ Դսեղի պատկերը դարաշրջանի բնորոշ կոլորիտով ու առանձնահատկություններով:

*– Կանայք օճառի պակասի պատճառով կրակի մոխիրը լցնում էին ամանի մեջ, մոխիրը նստում էր ամանի տակ, ամանի երեսի պարզ մոխրաջրով կանայք լվացքն էին անում:*



*– Հիշողությունիցս չի ջնջվում երաժշտական միակ միջոց կոչված պատիֆոնը, որ կար մի քանի ունևորների տներում:*

Գյուղացին լուրեր էր ստանում ռադիոյի միջոցով, որ կար միայն գյուղսովետի գրասենյակում: Երեխաներով դպրոցից տուն գալիս լսում էինք լուրերն ու զարմանում այդ զարմանահրաշք սարքավորման վրա:

Անմոռանալի է և գյուղի մթերային խանութը, որտեղ, բացի հաց ու պանրից, մեծ կտորներով շաքար, գույնզգույն «շարիկ» ու «բարձիկ» կոչվող կոնֆետներ էին վաճառում: Մտնում էինք խանութ, երկար նայում այդ գույնզգույն կոնֆետներին, մեկս մյուսին ցույց տալով՝ հեռանում:

*– Իմ մեծերը ասում էին, որ տարբեր ժամանակներում, բայց նույն հարկի տակ, նույն հնամաշ փայտյա օրորոցում ենք մեծացել Հովհաննես Թումանյանի Մարոն ու ես:*

Մարոյի հայրը՝ իմ հարազատ պապը, դսեղցի զուռնաչի Սաքոն էր, ով ավանդույթը հարգող մարդ էր: Հորաքրոջս՝ Մարոյին ինը տարեկան, պապս մարդու է տվել տարիքով մեծ չոբան Կարոյին: Մարոն չի համակերպվել ամուսնական կյանքին, վերադարձել է հայրական տուն: Պապս չի ընդունել աղջկան, որպես թե իր անունը խայտառակող՝ անձնավորություն: Տատս Մարոյի մայրը՝ Մարանը, իրավունք չուներ խոսել տղամարդու կամքին հակառակ կամ միջամտել, այլ կերպ ասած՝ Մարոյին աջակից կամ ոգևորող չի եղել: Նա բնության է ապավինել ու նրան պատմել իր երեխայական մտքերը: Նրա փրկությունը քարափից ձորն ընկնելն է եղել:

*Դեռ Դեբետը մրմնջում է,*
*Ու ձայն տալիս Մարոյին,*
*Արի երգենք, վազենք, խաղանք,*
*Չկան աղջիկները նենգ ու հին:*

*Եվ պապս՝ Սաքոն, ու տատս՝ Մարանը, այդ ողբերգությունից հետո երկար չեն ապրել:*

*Նրանց շիրիմները գտնվում են գյուղի կենտրոնի փոքրիկ գերեզմանոցում:*

Անտարակույս, ընթերցողս ջերմությամբ կընդունի նաև Լիդա տատի օրագրում տեղ գտած խնդուկներն ու զվարճապատումները:

## Դսեղի զվարճապատումներ

***

Դսեղցին բողոքում է ընկերոջը.
– Կնիկս ամեն օր փող ա ուզում:
Ընկերն էլ թե.
– Էտքան փողն ինչի՞ն ա պետք:
– Հլա չեմ տվել, չգիտեմ:

***

90-ամյա դսեղցի կինը, որ հարսից շատ դժգոհ էր, իրեն-իրեն մտմտում է.
– Բա հիմի մի մեծ քարով չջարդեմ էտ հարս կոչվածի գլուխը: Թեկուզ գնամ մի տասը տարի էլ նստեմ: Բայց հո կգնամ արխեին կապրեմ:

***

Դսեղցու կինը դիմում է ամուսնուն.
– Էս մեր նոր հարևանը էնքամ շատ է սիրում իրա կնկան: Ի՞նչ կլի դու էլ նրա նման սիրես:
Ամուսինն էլ թե.
– Էտ կնգանը ես դեռ չեմ տեսել, չեմ էլ ճանաչում, ո՞նց սիրեմ:

***

Դսեղցին տեղը տեղին խմած փռվել էր գետնին: Մոտենում է ոստիկանն ու հորդորում է խմածին հետևել իրեն, իր հետ գնալ բաժին: Հարբածն էլ թե.
– Ախպեր ջան, դու գնա քո գործին, էնա, որ կարենամ, մեր տուն կգնամ էլի:

**Լևոն ԽԱՉԱՏՐՅԱՆ**

---

**Այս խոհերի, այս գրքերի, այս մտքերի աշխարհում**
**Կա մի արև անեզրական, որ չի իջնում ու մարում.**
**Վառվում է նա լույսով անմար և ջեռ պահում մեր ոգին**
**Ստեղծագործ հրով անճառ՝ անգետ չարին ու բարուն:**
***Եղիշե ՉԱՐԵՆՑ***

**Վա՜յ էն ազգին, որ աշխարքումս անտեր ա,**
**Վա՜յ էն երկրին, որ թշնամուն գերի ա,**
**Վա՜յ էն խալխին, որ ինքն իր կյանքն, աշխարքը**
**Չի պահպանիլ ու հարամու ձեռ կտա:**
***Խաչատուր ԱԲՈՎՅԱՆ***

# Ստեղծագործում են մեր ընթերցողները

***

Այս ցավս իմ մեջ խորանում է հետզհետե:
Օրըստօրե սարսուռներով ներխորքերի
Ես հասնում եմ ակունքին արյունազեղ
Դեռ չեմ գտնում դարման ու դեղ...

Այս ցավս իմ մեջ, որդուս զուլալ աչքերով
Հանգուցում է ճերմակագեն Արարատին,
Որքան ցա՜վ են ինձ կտակել լռությունով
Պա՜պ ու տա՜տս՝ կապված իրենց պապ ու տատին:

Այս ցավս իմ մեջ բարդված այսպես
Թունդ է դառնում՝ իրեն տված ժամանակին,
Որ ես խմեմ լցրած թասերը արնակեզ,
Ու վե՜ր ելնեմ հասնելու իմ ծովից ծով Հայաստանին...

***

Արի տանեմ գիշերներով իմ զառանցող,
Սրբաներյան արահետով արյունացող:
Առևանգված ու եղծված խորաններով,
Անապատի արյունաումպ ավազներով:

Արի գնանք, օգնիր խաչերը բարձրացնենք,
Մեկի՜ կ-մեկի՜կ սրտիս Գողգոթային շարենք:
Կորուստներս հաշվենք անմեղ միլիոնանուն,
Նրանք իմ մեջ մորթված զառներ անուն - անուն:

Արի գնանք, վերքեր լվամ ես մայրաբար,
Ո՞ւր են նրանք ուխտավորներն, որոնց տարար:
Ո՞ւր է հասել երթը նրանց երկնաօծ,
Սրտիս վրա լռնգյան քանի՜ արյունախոց:

Արի ամեն հոգոցը իմ բառագրիր,
Ճշմարտությունն իմ արյունով հուշաներկիր:
Արի նստիր, թերթիր էջերը հոգեգքիս,
Միլիոն ու կես խաչեր են տես. «Domine quo vadis?»

***

Ծաղիկները ծառին վերհուշով են ծաղկել,
Երկնքի աչքը անձրևակոծում,
Ձեր կորուստն իմ մեջ՝բյուր լճեր է լացել
Ու դուք ինձանում կերոն միլիոնհուր:

Փախչում են հիմա երազները ծավի,
Տիեզերքից խրտնած իմ մեջ ամբարվում,
Եվ հրաշաղախ հոգիս այրվողի
Խաչված դիեր է տանում համբարձում:
Ես նրանց նման որբ եմ ու մորթված,
Նրանց աղերսն է իմ թաց շուրթերին,
Իմ աչքերի մեջ կորուստներ ու լաց
Ու ապրած եղեռն իմ անմեղ մարմնին...

***

Իննիսուն ինը տարի ապրել եմ ապուպապիս
աչքերում տամուկ՝ հույս հարության...
Իննիսուն ինը տարի համառել եմ ատուտատիս
բերրի արգանդում՝լույս եղելության...
Իննիսուն ինը տարի Հող ու Լույսի մեջ
Եղել եմ Սերմ ու Սերմնացան
Սպասումների քանի ծիլ ծլեց,
Քանի՜ ճիչ լսվեց արդարության...
03.2014

***

### Որդուս՝ Նարեկին

Որդի՜ս, Նարեկը օսմանին մնաց,
Անսիրտ դահիճը ինձանից խլեց
Ինձ անապատի տապերին տված
Վանքերս առավ՝ Աստծուս նզովեց:

Արարատն առավ ու փշալարեց՝
Որպես Տիրաթագ գլուխ սրբազան,
Որդի՛ս, հոգուս մեջ ողբի հազար էջ,
Գտի՛ր ճանապարհն աստվածաշնչյան,

Վանիս կապույտի ցնորքին հասնեմ,
Հասնեմ Վարագին ու Ծովասարին
Ու կարոտախեղդ հողս համբուրեմ՝
Հասած Սիփանիս առնացի գրկին:

***

Բերեք համբույրներ բեղմնավորող՝
Միլիոն կես անգամ մեղանչեմ պիտի,
Բերեք սաղմերը կյանքի կոչվող
Միլիոն կես անգամ ցավեմ երկունքլի:

Բերեք աղոթքներն աստվածաաղերս,
Միլիոն կես անգամ Տե՜ր, ուրանամ քեզ,
Խղճի խունկերը ձեր մեռելածես,
Միլիոն կես անգամ թաղվել եմ անծես...

Բերեք դժոխքը մարդկային խղճի՝
Ես լռեմ այդժամ, երբ այն հառաչի,
Բերեք արցունքներն իմ բյուր լճերի
Ո՞վ է նոր Նոյը թող տապան ելնի...

Միլիոն ու կեսին իր տապանն առնի
Ու եղծահեղձան ջրերի հոսքով
Բոսոր հուրն հագած արշալույսի
Մեր նոր հարության Արարատ հասնի:

***

Ես ձեր արյունով ներկված անունն եմ,
Հույսն եմ՝ երկնքի դռները ծեծող,
Ձեր ցավս զգում եմ սուր ու շեղբիարված,
Ես տարիների հեքից հեռացող:
Աչքեր կուրացնող Աստծո լույսն էր՝
Դարձել էր թևեր՝ ձեզ երկինք տանող,
Իսկ իմ հոգու մեջ քո այրող հուրն է,
Կիսված հայրենիք, լրված սրտի դող...

***

Ո՞վ է ասում, թե դուք մեռաք,
Բա իմ՝ խորքից ո՞վ է ձայնում,
Ես ու՞մ ճիչն եմ համապարփագ,
Ու՞մ մարմինն եմ միլիոնանուն:

Ո՞վ է ասում, թե ձեզ տարան
Անապատը մոռացումի,
Բա էն ո՞վ է իմ մեջ ծաղկում
Հոխորդ սրտով ցասումի:

Ո՞վ է ասում, ու՞մ բառն է դա.
Կույր ու անդող ազգե՞ր բազում,
Չգիտեք, որ ի՞նձ մերժելով
Վաղը հերթը ձե՞զ է հասնում...

Ո՞վ է հերքում արհավիրքն այն
Թե սուտ է ու չկա վկա,
Դուք ձեր կյանքով կույր աղա եք
Ես՝Տիրոջը լռող ծառա...

Գլորվում է ժամանակը,
Մեր միության ժամը կգա՜...

***Նաիրա ՍԻՄՈՆՅԱՆ***

---

* Բոլոր իրերի հիմքում ընկած է ջուրը և բոլոր իրերը շնչավորված են:

*ԹԱԼԵՍ*

* Բոլոր իրերը առաջացել են ոչ թե նյութական նախասկզբից, այլ՝ ապեյրոնից, որը հավերժական է, անփոփոխ և աստվածային:

*ԱՆԱՔՍԻՄԱՆԴՐԵՍ*

* Նոսրանալով՝ օդը վերածվում է կրակի, իսկ խտանալով՝ առաջացնում է պինդ մարմիններ:

*ԱՆԱՔՍԻՄԵՆԵՍ*

* Նույն գետը երկու անգամ չես մտնի:
* Ինչպես տիեզերքը, այնպես էլ մարդն ունի իր լոգոսը, որը տիեզերական լոգոսի մասն է:
* Մեկը հավասար է հազարին, եթե նա լավագույնն է:

*ՀԵՐԱԿԼԻՏԵՍ*

* Ով գիտի՝ չի խոսում, ով խոսում է՝ չգիտի:
* Գոյություն ունեցող ամեն ինչը ծագում է Դաոյից, զարգանում ըստ Դաոյի օրենքների և շրջապտույտ կատարելով՝ վերադառնում կրկին Դաոյին:

*ԼԱՈ ՑԶԻ*

* Թեև Եսը ինքնին ազատ է և անմահ, բայց անգիտակից լինելու պատճառով խառնվում է մարմնի, զգայությունների և մտքի հետ: Եսի և ոչ Եսի չտարբերակման պատճառով առաջ են գալիս մարդկային բոլոր տառապանքները:

*ԿԱՊԻԼԱ*

* Իմացությունն իրականանում է յոթ հասկացությունների միջոցով՝ սուբստանցիա, որակ, գործողություն, համընդհանրություն, առանձնահատկություն, ներհատուկություն և ոչ կեցություն: Իսկ սուբստանցիաները լինում են ինը տեսակի, որոնք են՝ հողը, ջուրը, կրակը, օդը, եթերը, ժամանակը, տարածությունը, հոգին և միտքը:

*ՔԱՆԱԴԱ*

* Ողջ գոյի ճանաչողության բանալին մաթեմատիկայի և նրա սկզբունքի՝ թվի մեջ է:
* Տիեզերական մարմիններն առաջանում են կենտրոնական մարմնից՝ կրակից և պտտվում են դրա շուրջը:

*ՊՅՈՒԹԱԳՈՐԱՍ*

* Մարդիկ են իրենց նմանությամբ ստեղծում աստվածներին և նրանց վերագրում մարդկային հատկությունները:

*ՔՍԵՆՈՓԱՆԵՍ*

* Տիեզերքում տեղի են ունենում ոչ թե առաջացման և ոչնչացման, այլ միացման և քայքայման գործընթացներ: Սերը և ատելությունը փոխնիփոխ հաջորդում են իրար, որի հետևանքով գոյանում է տիեզերածնության չորս փուլերը ...

*ԷՄՊԵԴՈԿԼԵՍ*

* Ես գիտեմ, որ ոչինչ չգիտեմ:
* Գիտելիքը առաքինություն է:

*ՍՈԿՐԱՏԵՍ*

# Անտիկ աշխարհի հայ մեծանուն ճարտասանը

Հայաստանում դեռևս Տիգրան Մեծի օրոք (Ք. ա. 95 – 55 թթ.) շատ հարգի է եղել ճարտասանական արվեստը: Հելլենիստական մշակույթի ազդեցությամբ դրական տեղաշարժեր են կատարվել նաև ճարտասանության բնագավառում: Տիգրանակերտում բացվել է թատրոն, կազմակերպվել են ճարտասանություն ուսուցանող դպրոցներ: Տիգրան Մեծի արքունիքում են եղել հույն ականավոր գիտնական-ճարտասաններ Ամֆրիկատես Աթենացին և Մետրոդորոս Սկեպսիացին: Վերջինս գրել է Տիգրան Մեծի պատմությունը, որը, ինչպես Հակոբ Մանանդյանն է նշում, ցավոք չի պահպանվել (1): Հույն այդ և մյուս երևելի մտավորականները Հայաստանում իրենց գործունեությամբ, անշուշտ, բարերար հետք են թողել նաև մեր հետագա պատմության մեջ:

Ինչպես հայտնի է, Տիգրան Մեծի հելլենասեր քաղաքականությունը շարունակել է նաև նրա որդին՝ Արտավազդ II-ը (Ք. ա. 55 – 34 թթ.), ով իր գործունեությամբ նպաստել է ոչ միայն հայկական պետականության անկախության ապահովմանը, այլև հայ մշակույթի զարգացմանը: Նա հայտնի է եղել որպես ողբերգակ: Եվ ինչպես Պլուտարքոսն է վկայում, գրել է նաև ճառեր, պատմական երկեր, որոնք նույնպես չեն պահպանվել:

Նշանավոր ճարտասան է եղել նաև մ. թ. ա. I դարի հայ գիտնական Տիրանը կամ Տիրանյոն, ում հռոմեական զորավար Լուկուլլոսը դեպի Հայաստան կատարած արշավանքի ժամանակ (Ք. ա. 69 – 68 թթ.) գերեվարել և իր հետ տարել էր Հռոմ, որտեղ էլ նա մեծ համբավ էր ձեռք բերել: Լինելով Ցիցերոնի մտերիմներից՝ Տիրանը դարձել էր վերջինիս դիվանապետը, հայտնի դարձել իբրև ճարտասան, քերական, մատենագետ: Եվ ինչպես որոշ ուսումնասիրողներ են նշում, նրան անգամ ունկնդրել է Ստրաբոնը:

Հայաստանում ճարտասանական արվեստի ուսումնասիրությունն առավել մեծ ուշադրության է արժանացել քրիստոնեության մուտքից և այն՝ որպես պետական գաղափարախոսություն դառնալուց հետո, երբ հայ միջնադարյան մշակույթը եղել է վաղ քրիստոնեական քաղաքակրթության միացյալ շղթայի մի օղակը:

Բանն այն է, որ 3-րդ դարի վերջին և 4-րդ դարի սկզբին Հայաստանում խիստ անհրաժեշտ էին քրիստոնեական կրոնի էությունն իմացող և այն մեկնաբանել կարողացող գրագետ, բանիմաց մարդիկ: Հեթանոսության դեմ մղվող դժվարին և ծանր պայքարում հսկայական դեր է կատարել ճարտասանների նոր սերունդը: Ահա պատմական հենց այդ ժամանակաշրջանում հայ ժողովրդին և նրա պետականությանը հարկավոր էին կրթված, լուսավորյալ և եռանդուն մարդիկ: Միակ ճանապարհը, անշուշտ, արտասահմանի մեծ քաղաքների կրթօջախներում հայ պատանիներին ուսուցման ուղարկելն էր: Եվ շատերն էին մեկնում Եդեսիա, Անտիոք, Աթենք, Հռոմ, Ալեքսանդրիա: Ուսում ստանալուց հետո նրանք վերադառնում էին և լծվում ազգանվեր գործի: Սակայն լինում էին նաև այնպիսիները, ովքեր չէին վերադառնում, և նրանցից ոմանք, հաստատվելով այդ քաղաքներում, դառնալով ականավոր դեմքեր, ծառայում էին ընդհանուր քաղաքակրթությանը և իրենց անվամբ, ինչպես ասում են, փառք ու պատիվ էին բերում նաև հայ ժողովրդին: Այդպիսի գործիչներից էին 5-րդ դարի մեծ գիտնական-իմաստասեր, բանաստեղծ, ճարտասան և պետական գործիչ Լեոնտիոսը (Ղևոնդիոս Հայկազն), ով Աթենքի համալսարանի ռեկտորն էր, ինչպես նաև 9-րդ դարի ականավոր գիտնական, Կոստանդնուպոլսի համալսարանի ռեկտոր Լևոն Իմաստասերը, ով սլավոնական լուսավորիչներ Կիրիլի և Մեֆոդիի ուսուցիչն էր, և այլք:

Ահա այդպիսի գործիչների շարքին պետք է դասել նաև 3–4-րդ դդ. մեծանուն ճարտասան, իմաստասեր և մանկավարժ Պարույր Հայկազնին, ով հույն մատենագրության մեջ հայտնի է որպես Պրոերեսիոս: Նրա մասին հայ մատենագրության մեջ ոչ մի տվյալ չկա, անգամ չի պահպանվել անունը: Թերևս դա նաև այն պատճառով, որ նա չի գործել Հայաստանում և կտրված է եղել մայր ժողովրդից:

Հայ մատենագրությունը և նրա անբաժան մասը կազմող պատմագրությունը, ինչպես հայտնի է, սկսվում է միայն 5-րդ դարից, և հայոց պատմության նախորդ ժամանակաշրջանի վերաբերյալ տեղեկություններ մենք քաղում ենք օտար աղբյուրներից: Հետևաբար զարմանալի չէ, որ Պրոերեսիոսի պես խոշոր անհատականության մասին մեզ տեղեկություններ է հաղորդում միայն հունական մատենագրությունը, մասնավորապես՝ հույն պատմագիր, ճարտասան և իմաստասեր Եվնապիոս Սարդեսցին (2), ով եղել է իր ժամանակի ականավոր դեմքերից մեկը, զբաղվել է նաև գրական ստեղծագործությամբ և բնական գիտությունների ուսումնասիրությամբ: Ռուս հայտնի բյուզանդագետ պրոֆեսոր Զինաիդա Ուդալցովան նրան համարում է Պրոերեսիոսի աշակերտը և համոզված հետևորդը, ով նրա ձեռքի տակ է հասել գիտության և արվեստի բարձունքներին (3): Պրոերեսիոսի մասին որոշ տեղեկություններ են հայտնում նաև անտիկ աշխարհի նշանավոր մտավորականներ և եկեղեցական գործիչներ Գրիգոր Նազիանզացին, Բարսեղ Կեսարացին, Գրիգոր Նյուսացին և Լիբանիոսը:

Եվնապիոս Սարդեսցու աշխատությունը, որ կրում է «Սոփեստների կյանքը» խորագիրը, բնագրի լեզվով՝ հունարեն և անգլերեն միասին, քանիցս հրատարակվել է: Հատվածաբար այն տպագրվել է նաև ռուսերեն՝ գիտական ծանոթագրություններով և մեկնաբանություններով: Ցավոք այն հայերեն չի հրատարակվել:

Իր այդ աշխատության մեջ Սարդեսցին, հետևելով Պլուտարքոսի հանրահայտ «Զուգահեռ կենսագրությունների» ավանդույթներին, որտեղ ներկայացված են հույն և հռոմեացի հայտնի գործիչների շուրջ 50 կենսագրություններ, տվել է իր ժամանակի մի շարք ականավոր մարդկանց՝ Պլոտինի, Յամբլիքոսի, Հիմերիոսի, Հուլիանոսի, ինչպես նաև Պրոերեսիոսի և այլոց կենսագրությունները, հարուստ տեղեկություններ այդ ժամանակաշրջանի մասին: Նկարագրել է նաև այն միջավայրը, որի պայմաններում ապրել և գործել է Պրոերեսիոսը, ներկայացրել է նրա ուսուցչին, ուսումնակիցներին, գործընկերներին, սաներին և անգամ հակառակորդներին:

Եվնապիոսը Սարդից եկել էր Աթենք Պրոերեսիոսի ճարտասանական դպրոցում ուսում ստանալու նպատակով: Նա պատմում է, որ իր ուսուցչին առաջին անգամ տեսել է 362 թ., երբ վերջինս եղել է շուրջ 90-ամյա ծերունի, իսկ ինքը՝ 17-ամյա պատանի (4): Այդ ժամանակ Պրոերեսիոսը գտնվում էր այն հասարակական-գաղափարական իրադարձությունների կենտրոնում, որի շնորհիվ հաղթանակել էր քրիստոնեությունը և ձևավորվել դրա տեսական հիմունքները:

Ըստ Սարդեսցու՝ Պրոերեսիոսը ծնվել է 276 թ. և մահացել 367 թ. Աթենքում: Սակայն որոշ ուսումնասիրողներ գտնում են, որ նրա կյանքի և գործունեության ժամանակաշրջանը ընդգրկում է 272 – 368 թթ.: Ինչևէ, փաստը մնում է այն, որ Պրոերեոսիոսն անցել է կյանքի երկար և խոչընդոտներով լի ճանապարհ, որը նա հաղթահարել է և դարձել իր ժամանակաշրջանի մեծանուն մտավորականներից մեկը: Նա հաղթահարել է աղքատություն, սով, նախանձ և բազում հալածանքներ: Նրա հակառակորդները, ըստ Սարդեսցու, մշտապես ձգտում էին բոլոր հնարքներով փնասել նրան: Զրպարտելով քաղաքական հանցանքների մեջ՝ նրա թշնամիներին անգամ հաջողվում է համոզել Աթենքի հռոմեական նահանգապետին աքսորել Պրոերեսիոսին Հոնիական ծովի գրեթե անմարդաբնակ մի կղզի, որտեղ մի քանի տարի անց է կացնում աղքատության մեջ, և երբ փոխվում է Աթենքի նահանգապետը, Պրոերեսիոսին հաջողվում է իր բարեկամների միջոցով նորից վերադառնալ Աթենք: Սակայն նրա հակառակորդները շարունակում են որոգայթներ լարել նրա դեմ, և նոր նահանգապետը ստիպված է լինում հրավիրել նրան վերջիններիս հետ նոր մրցության, և որում նա դարձյալ հաղթում է: Ահա այսպիսին է եղել Պրոերեսիոսը՝ միշտ հաղթող, արդարամիտ և իմաստուն:

Մասնագետներից ոմանք ենթադրում են, որ Պրոերեսիոսը ծագումով Փոքր Հայքից էր: Կրթություն ստանալու նպատակով մեկնել էր Անտիոք, ապա 308 թ. եկել Աթենք և դարձել այնտեղի հայտնի հռետորական դպրոցի տնօրեն Հուլիանոսի աշակերտը: Իր առաջադիմությամբ նա տարբերվում էր բոլորից, և երբ Հուլիանոսը մեկնում է Աթենքից, նրա թափուր պաշտոնի համար մրցույթ է հայտարարվում, որին մասնակցած 5 ընտրյալներից ձայների առավելությամբ հաղթում է Պրոերեսիոսը: Լինելով մեծ գիտնական, ճարտասան և մանկավարժ՝ նա գրել և ուսուցանել է հունարենով: Ցավոք նրա ստեղծագործություններից և ոչ մեկը չի պահպանվել: Ամուսնացած է եղել հույն մի օրիորդի՝ Ամֆիկլեայի հետ, ով ծագումով եղել է Տրալլից: Ունեցել է 2 դուստր և մշտապես մտահոգված է եղել նրանց ճակատագրով: Իր ազատությունն ընտանեկան կյան-

➲23

22⊃

քով չկաշկանդելու նպատակով շուտով բաժանվել է կնոջից և ապրել միայնակ: Վախճանվել է 95 տարեկան հասակում:

Եվնապիոս Սարդեսցին Պրոերեսիոսի մասին գրել է ոչ միայն նրան նվիրված հատվածում, այլև ակնարկել մյուս երևելի գործիչներին անդրադառնալիս, մասնավորապես՝ նրա հանրահայտ ուսուցչի՝ Հուլիանոսի մասին գրելիս: Սարդեսցին պատմում է, որ ինքը տեսել է Հուլիանոսի տունը, որը լցված է եղել մուսաների ոգով և շատ նման է եղել սրբավայրի: Այնտեղ դրված են եղել նրա սիրելի աշակերտների քանդակները, այդ թվում՝ Պրոերեսիոսինը:

Ըստ Սարդեսցու՝ Հուլիանոսը սերում էր Կապադովկիայից, և նրա բազմաթիվ սաների մեջ քիչ չէին նաև նրա հայրենակիցները: Սակայն նա առավել գնահատանքի էր արժանացրել հայազգի իր տաղանդավոր սանին, որին անգամ իր տունն էր կտակել: Այդ եղելությունը նաև խոսում է այն մասին, որ Հուլիանոսը հայրաբար է վերաբերվել Պրոերեսիոսին՝ իբրև զավակի:

Եվնապիոսը պատմում է նաև այսպիսի մի դեպք, որ տեղի է ունեցել Աթենքի փողոցներից մեկում. Հուլիանոսի հակառակորդի սաները կռիվ են սարքում և մեղադրում Պրոերեսիոսին ու նրա ընկերներին: Գործը հասնում է դատարան: Պրոկոնսուլը պահանջում է բացատրություն ոչ թե ուսուցիչներից, այլ նրանց սաներից: Սակայն բանսարկուները հանպատրաստից ճառի ընդունակ չէին և պետք է վաղօրոք պատրաստվեին դատարանում հանդես գալու համար: Ուստի նրանց ուսուցիչն առաջարկում է դատը հետաձգել: Բայց Հուլիանոսի սաներն ընդունակ էին ցանկացած պահի ճառ ասելու և պաշտպանելու իրենց սեփական գաղափարներն ու շահերը: Այսպիսով պրոկոնսուլի պահանջով ելույթ է ունենում Պրոերեսիոսը և շահում դատը: Ահա նրա այդ հանպատրաստից ճառը բնութագրվում է որպես ատտիկյան նրբագեղ և խորիմաստ ճարտասանության նմուշ (5):

Եվնապիոսը հաղորդում է, որ Պրոերեսիոսն իր հերթին ունեցել է բազում սաներ, որոնցից մեկը դարձել էր միապետ: Դա Հուլիանոս կայսրն էր (361 – 363 թթ.), ով ստացել էր քրիստոնեական դաստիարակություն, բայց կայսր դառնալուց հետո իրեն հռչակել էր հեթանոսության կողմնակից և սկսել էր հետապնդել ու հալածել քրիստոնեաներին, որի համար քրիստոնեական եկեղեցին նրան «Ուրացող» մականունը տվեց: Ահա այդ դաժան տարիներին, սակայն, նա ոչ միայն ձեռք չտվեց, չհետապնդեց իր ուսուցչին, այլև թողնելով նրան Աթենքի ճարտասանական դպրոցի տնօրենի պաշտոնում՝ նամակ է հղում, որտեղ ուսուցչին անվանում է հռետորության հորդառատ և անարգել մի գետ, որ մրցում է Պերիկլեսի հետ, իսկ երբեմն էլ գերազանցում նրան:

Հուլիանոսն առաջարկում է Պրոերեսիոսին իր արխիվային նյութերը ժամանակաշրջանի պատմությունը գրի առնելու համար: Ըստ էության՝ կայսրը փափագում էր նրա ճարտար գրչով անմահացնել իր անունը: Սակայն Պրոերեսիոսը, չօգտվելով արտոնությունից, անգամ հրաժարվում է իր գործից հանուն իր քրիստոնեական դավանանքի: Նա չկամեցավ իր դիրքով պարտավորված մնալ հռոմեական կայսրին: Պետք է նշել, որ որոշ ուսումնասիրողներ, մասնավորապես՝ ռուս գիտնական Լիդիա Ֆրեյբերգը, սկզբում Պրոերեսիոսին համարել են հեթանոս մտածող և ճարտասան (6), որն անշուշտ շփոթմունք էր՝ թերևս պայմանավորված Հուլիանոս կայսրին դասեր տալու և վերջինիս կողմից հալածանքների չենթարկվելու փաստով, ինչպես նաև այն հանգամանքով, որ Պրոերեսիոսի կենսագիրը՝ Եվնապիոս Սարդեսցին, հեթանոսության ջատագով էր: Հետագայում, սակայն, հստակություն է մտցվում այդ խնդրում նույն հեղինակի՝ Լ. Ֆրեյբերգի կողմից, ով մեծ հիացմունքով է գրում Պրոերեսիոսի մասին՝ որպես քրիստոնեության ջատագովի (7):

Պրոերեսիոսի սաներից են եղել նաև բյուզանդական գրականության հիմնադիրներ և եկեղեցական նշանավոր գործիչներ Գրիգոր Նազիանզացին և Բարսեղ Կեսարացին, ովքեր երկար տարիներ կապ են պահպանել իրենց ուսուցչի հետ և խորապես կրել են նրա ազդեցությունը: Գրիգոր Նազիանզացին անգամ գրել է Պրոերեսիոսի տապանագիր մահախոսականը, ի խորոց սրտի խոսքն ասել իր սիրելի ուսուցչի մասին (8):

Պրոերեսիոսին բարձր է գնահատել նաև իր ժամանակակից ականավոր ճարտասան և իմաստասեր Լիբանիոսը, որին պրոֆեսոր Մարիա Գրաբար-Պասսեկը նույնպես համարում է Պրոերեսիոսի սանը (9): Լիբանիոսը նրա մասին գրել է, թե վերջինս պերճախոսությամբ աշխարհին էր գրավում և արժանացել է արձանների, ունեցել է ազնիվ վարք: Իսկ ինչպես հայտնի է, ճարտասանի համար բոլոր ժամանակներում գիտելիքներից և խոսելու ձիրքից ոչ պակաս կարևոր է եղել ազնիվ վարքը, առինքնող նկարագիրը, որ, անշուշտ, հավատ ու վստահություն է ներշնչել նրա գաղափարախոսության նկատմամբ:

Հին Հունաստանում ընդունված է եղել ականավոր քաղաքական գործիչներին, ճարտասաններին իրենց կենդանության օրոք դափնեպսակներով մեծարելը, իրենց պատվին արձաններ կանգնեցնելը: Սակայն հելլեններն այդպես են վարվել քչերի հետ, բայց, ինչպես ասվում է, վարվել են տեղին և ճշմարտացի: Այդպիսի պատվի ու փառքի են արժանացել աթենացի նշանավոր գործիչներ և ճարտասաններ Դեմոսթենեսը, որին անվանել են «Հայր հայրենիքի», Սոկրատեսը և այլք: Այդ ավանդույթը դարեր անց շարունակվել է նաև Հռոմում: Հռոմեացիները, բարձր գնահատելով Պրոերեսիոսի ծառայություններն անտիկ գիտության և կրթության զարգացման ասպարեզում, վերջինիս պատվին նրա կենդանության օրոք Հռոմում կանգնեցրել են նրա պղնձե կիսանդրին հետևյալ մակագրությամբ՝ «Տիեզերքի թագուհի Հռոմը՝ ճարտասանության արքային»: Նրան բարձր է գնահատել նաև Կոստանդիանոս Մեծ կայսրը, որի արքունիքում նա ազատ ելք ու մուտք է ունեցել :

Ժամանակակիցների վկայությամբ Պրոերեսիոսի ելույթներն աչքի են ընկել իրենց բովանդակությամբ, մտքերի և հույզերի հարստությամբ: Դրանք եղել են պատկերավոր, դիպուկ, տրամաբանական: Նա հաճախ է անդրադարձել նաև ունկնդիրների առաջադրած թեմաներին: Սարդեսցու վկայությամբ՝ մի անգամ Պրոերեսիոսի հերթական ելույթի ժամանակ ունկնդիրները նրա ճառը սղագրելուց հետո խնդրում են նրան կրկնել այն ամբողջությամբ, և նա այդկերպ էլ անում է՝ զարմանք պատճառելով ներկաներին:

Պրոերեսիոսի ժամանակակիցները նրան համեմատել են պերճախոսության աստված Հերմեսի և Ցիցերոնի հետ: Հույները նրան անվանում էին նաև «Աստվածային Պրոերեսիոս», «Նոր Պերիկլես»:

Եվնապիոս Սարդեսցին հաղորդում է, որ բացի խոսքի և մտքի հզորությունից, Պրոերեսիոսը բնությունից օժտված է եղել նաև այլ բարեմասնություններով. եղել է վայելչակազմ, գեղեցկատես, հաղթահասակ, ունեցել է հրացայտ աչքեր, լայն ճակատ, խիտ մազեր՝ սպիտակ ինչպես արծաթ կամ ծովի ալիքներ: Խոր ծերության մեջ անգամ պահպանել է իր հռետորության և մտքի ողջ ուժը: Ինչպես Սարդեսցին է նշում. «Հոգին տակավին երտասարդ պահպանում էր նրա հոգնած մարմինը»:

Թեև ինչպես նշվեց՝ հայ մատենագրության մեջ Պրոերեսիոսի մասին տվյալներ չկան, սակայն պետք է չանտեսել, որ նրա երիտասարդության տարիներին քրիստոնեությունը Հայաստանում դարձավ պետական կրոն, իսկ ինքը քրիստոնեության ջատագովներից էր այդ դարաշրջանում, և դժվար է կարծել, որ մեծահամբավ այդ հայի մասին չիմանային Հայաստանում, մանավանդ քրիստոնեության առաջին հայ ջատագովները՝ Ագաթանգեղոսը, Կորյունը, Մովսես Խորենացին, Փավստոս Բուզանդը, Եզնիկ Կողբացին, որոնք քաջ ծանոթ էին Պրոերեսիոսի սաներին՝ Գրիգոր Նազիազանցուն և Բարսեղ Կեսարացուն, որոնց գործերից թարգմանություններ էին կատարել: Դրանք հայ իրականության մեջ առաջին թարգմանված գրքերից էին, որ նույնիսկ կրել են դրանց հեղինակների որոշակի ազդեցությունը:

Պրոերեսիոսիանձըմշտապեսհետաքրքրել է հայ գրողներին, գիտնականներին, ինչպիսիք են օրինակ՝ Րաֆֆին, ով գրել է «Պարույր Հայկազն» վիպակը, Լեոն, Ա. Ալպոյաճյանը, Գ. Զարբհանալյանը, Ա. Սուքրյանը, Վ. Չալոյանը, Ս. Արևշատյանը և ուրիշներ: Պետք է նշել, որ հայագիտությունն ընդհանրապես շատ բարձր է գնահատում Պրոերեսիոսի և նրա սաների գործունեության նշանակությունը հայկական գեղագիտական մտքի և ճարտասանական արվեստի զարգացման համար:

Հունական կրթություն ստացած, մայր հայրենքից հեռու գործած մեծ մտավորականը, ըստ էության, մի նոր կամուրջ է դարձել հունական քաղաքակրթության և Հայաստանի միջև: Պրոերեսիոսն ունեցել է նաև բազում հայ սաներ (10), և այդ իմաստով նա չի կտրվել Հայաստանից նաև իր սաների և վերջիններիս սաների միջոցով: Ահա թե ինչ է գրել Լեոն նրա մասին. «Լինելով հույն գիտնական՝ Պրոերեսիոսը պատկանում է նաև հայ ժողովրդին: Նրա ծագումը մեծ նշանակություն ուներ այն պատճառով, որ հայ ուսանողությունն ավելի բազմացավ Աթենքում և ազդեցիկ դեր սկսեց կատարել ուսանողական աշխարհում: Նա հայ ուսանողության հոգին էր, ուսուցիչն ու խորհրդատուն, և քանի որ իբրև հռչակավոր գիտնական և ճարտասան ուներ շատ հա-

⊃24

23Ͽ

կառակորդներ, հայ ուսանողները նրա պաշտպանության համար մղում էին եռանդուն պայքար, ուստի և հայտնի դարձան իբրև խիզախ և մարտնչող...» (11):

Ըստ Րաֆֆու բնորոշման՝ «Պրոերեսիոսը ճարտասանական դպրոցին նվիրված էր իր հոգու բոլոր զգացմունքներով: Եվ պետք չէ մեղադրել նրան, որ չվերադաձավ հայրենիք: Նա գիտության և իմաստության սիրահար էր: Առաքինությունը, անարատությունը, արդարամտությունը նրա պատվավոր կյանքի հատկանիշներն էին: Նա ապրեց և գործեց գիտության և իմաստության համար...» (12):

Նախամեսրոպյան ժամանակաշրջանի հայ մշակույթին անդրադառնալիս, անշուշտ, պետք է արժանավույնս հիշատակել Պրոերեսիոսի՝ Պարույր Հայկազնի անունը: Ինչպես 19-րդ դարի վաստակաշատ գիտնական Գարեգին Զարբհանալյանն է իրավացիորեն նշում. «Նա հայկական դպրության պարծանք անվանի անձն է, մեր ամենեն մեծ ճարտասան անձը, հետևաբար նրան մեր պատմությունից և քաղաքակրթությունից կտրելու իրավունք չունենք» (13):

**Վ. Ա. ԽԱԺԱԿՅԱՆ**
**Պատմ. գիտ. թեկնածու, դոցենտ**

**Գրականություն**

1. Հ. Մանանդյան, Տիգրան II–ը և Հռոմը, Եր., 1972, էջ 85
2. Philostratus and Eunapius, Cambridge, 1961
3. Античная древность и средние века. Вып. 10, Свердловск, 1972, с. 70
4. Գ. Զարբհանալյան, Պատմութիւն հայերէն դպրութեանց, Վենետիկ, 1897, էջ 263
5. Ա. Ալպոյաճյան, Պատմություն հայ Կեսարիո, հ. Ա, Գահիրե, 1937, էջ 278
6. Византийская литература. М., 1974, с. 29
7. Античность и Византия. М., 1975, с. 8-9, 17
8. Գ. Զարբհանալյան, նշվ. աշխ., էջ 264
9. История греческой литературы. Т. 3, М.,1960, с. 291
10. Ա. Ալպոյաճյան, նշվ. աշխ., էջ 278
11. Լեո, Երկերի ժողովածու, հ. 1, Եր., 1966, էջ 426
12. Րաֆֆի, Պարույր Հայկազն, Երկերի ժողովածու, հ. 7, Եր., 1985, էջ 550-551
13. Գ. Զարբհանալյան, նշվ. աշխ., էջ 264-265

15Ͽ

* Անցյալի պատմությունը մի լուսատու լապտեր է, որ ամեն մի ժողովուրդ ձեռքին պետք է ունենա իր ճամփեն անմոլոր գնալու համար:
* Լեզուն է ամեն մի ժողովրդի գոյության ու էության ամենախոշոր փաստը, ինքնուրույնության ու հանճարի ամենախոշոր դրոշմը, պատմության ու հեռավոր անցյալի կախարդական բանալին, հոգեկան կարողությունների ամենաճոխ գանձարանը, հոգին ու հոգեբանությունը:
* Մեծությունը օրենքներ ու կանոններ չի ճանաչում. իրեն ցանկապատով չի փակում, եղած ցանկապատն էլ քանդում է:

**Հովհաննես ԹՈՒՄԱՆՅԱՆ**

* Տղաք, ինչ որ ունիք, – հոգեկան, մտային արժանիքներ կամ նյութապես հարստություն, – կպատկանի ձեր ժողովրդին, – անոր վերադարձնենք պիտի:

**Լևոն ՇԱՆԹ**

* Ազգը չի կարող կործանվել այլ կերպ, բացի ինքնասպանությունից:

**Պարույր ՍԵՎԱԿ**

* Հարկավոր է, այո, ազգովին ասպարեզ գալ, հարկավոր է ստեղծել մի հեղինակավոր մարմին, որպեսզի մեր ժողովրդի ճակատագիրը հանձնված չլինի պատահական ուժերի ղեկավարության:
* Անթիվ են հայ մտավորականության մեղքերը հայ ժողովրդի առաջ, անհամար են նրա սխալները, սակայն չմոռանանք, որ այսօրվա սխալը անուղղելի կլինի, այսօրվա մեղքը՝ մահացու:

**Վահան ՏԵՐՅԱՆ**

* Մի ժողովուրդ, որի որդիները հավասար չեն օրենքի եւ մահվան առջև՝ հաղթական հայրենիք չի ունենա:
* Կրոնների պես հայրենիքներն էլ պահանջում են, որ իրենց սպասարկողի ձեռքերը լինեն տաք եւ մաքրամաքուր:
* Ապագան վտանգված ժողովուրդների վերջին խաղաթուղթը – վերդաստիարակությունն է:
* Յուրաքանչյուր ազգի պարտականությունը մարդկության հանդեպ նախ և առաջ դրսևորվում է սեփական ազգի կենսունակության պահպանման և սեփական մշակույթի զարգացման ձևով:

**Գարեգին ՆԺԴԵՀ**

* Ազգային դպրոցները «ազգային ոգու» հենարաններից ամենաուժեղն են:

**Ալեքսանդր ՄՅԱՍՆԻԿՅԱՆ**

* Ազգերը մեռնում են... տխմարությունից:
* Իմաստուն է նա, ով պատճառի մեջ հետևանք է տեսնում, հետևանքում՝ պատճառ, տարբերությունների մեջ նույնություն է տեսնում, նույնություններում՝ տարբերություն, և ի վերջո, երևույթների մեջ էություններ է որսում, էություններում՝ հնարավոր երևույթ:
* Ո՛չ թեիզմ, ո՛չ աթեիզմ, պարզապես՝ էիզմ:

**Ալեքսանդր Արորդի ՎԱՐԴԵՏՅԱՆ**

# Հայն ու հայկականը

Հին հայերը առաջնորդվել են բուն հայկական թվականով, ըստ որի՝ տարին ուներ 12 ամիս (յուրաքանչյուր 30 օրով) և 13-րդ (լրացուցիչ ամիս 5 օրով):

Հայոց ամսանունները դիցաբանական ծագում ունեն:

Որոշ տոմարագետներ գտնում են, որ հայոց տոմարի ամիսները կոչվում են Հայկ նահապետի 12 ուստրերի և դուստրերի անուններով:

Անուններ են ունեցել նաև հայկական ամսվա 30 օրերը և Ավելյաց ամսվա 5 օրը:

Բուն Հայկա օրացույցը. Նավասարդ, Հոռի, Սահմի, Տրե, Քաղոց, Արաց, Մեհեկան, Արեգ, Ահեկան, Մարերի, Մարգաց, Հրոտից, Ավելյաց:

**Հին հայկական օրանունները.**

1. Արեգ
2. Հրանդ
3. Արամ
4. Մարգար
5. Ահրանք
6. Մազդեղ
7. Աստղիկ
8. Միհր
9. Ձոպաբեր
10. Մուրդ
11. Երեզկան
12. Անի
13. Պարխար
14. Վանատուր
15. Արամազդ
16. Մանի
17. Ասակ
18. Մասիս
19. Անահիտ
20. Արագած
21. Գրգուռ
22. Կորդուիք
23. Ծմակ
24. Լուսնակ
25. Ցրոն
26. Նպատ
27. Վահագն
28. Սիմ
29. Վարագ
30. Գիշերավոր

**Ավելյաց ամսվա անունները.**

1. Փայլածու
2. Արուսյակ
3. Հրատ
4. Լուսնթագ
5. Երևակ

Հայերը ունեցել են ոչ միայն իրենց ազգային ամսանուններն ու օրանունները, այլև օրը (գիշերն ու ցերեկը) բաժանել են 24 հավասար մասերի (ժամերի) և դրանց տվել հետևյալ անունները.

**Ցերեկվա ժամանունները՝**

Այգ, ցայգ, զայթացյալ, Ճառագայթյալ, Շառավիղյալ, Երկրատես, Շանթակող, Հրակաթ, Հուրփայլյալ, Թաղանթյալ, Արագոտ, Արփող:

**Գիշերվա ժամանունները՝**

Խավարակ, Աղջամուղջ, Մթացյալ, Հավաթափյալ, Գեղուկ, Լուսահեմ, Շաղավոտ, Կամավոտ, Բավական, Առավոտ, Լուսափայլ, Փայլածու:

Այս անունների մեջ ի հայտ է գալիս հին հայերի գեղագիտական ճաշակը ցերեկվա ու գիշերվա առանձին պահերի երանգները զանազանելու հարցում:

Դրանցից մի քանիսը ժամանակակից հայերենում պահպանվել են արդեն ոչ թե որպես ժամանուն, այլև ցերեկվա ու գիշերվա որևէ պահը ցուցանող հասկացություն (օրինակ, այգ, աղջամուղջ, առավոտ):

**Էջը կազմեց Լևոն ԽԱՉԱՏՐՅԱՆԸ**

# ՇՈՒՇԻՆ՝ ՄԵՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԹԱԳԸ



«...Շուշին ցույց տվեց, որ միայն սեփական ուժերով կարող ենք հասնել ազգային հաղթանակների: Բեկում էր սա: Եվ այդ բեկումը դարձավ այն հիմքը, որի վրա թե՛ Հայաստանի Հանրապետությունում, թե՛ Արցախում ստեղծվեցին ամենամեծ ձեռքբերումները՝ մեր բանակները», – ասել է սպարապետ Վազգեն Սարգսյանը: Դժվար է ըմբռնել ու հասկանալ այս խոսքերը, եթե երբևէ չես տեսել Շուշին, եթե երբևէ չես կանգնել բերդապարսպին ու չես զմայլվել պարսպի տակ սփռված Հայոց աշխարհի գողտրիկ այս գանձով, որ Շուշի ու Արցախ է կոչվում:

...Ստեփանակերտից մեքենան բարձրանում էր Շուշի: Հեռվից արդեն նշմարվում էր Ղազանչեցոց վանքի գմբեթը: Ահա երևաց և բերդը՝ իր բարձր աշտարակներով: Հիշեցի այն տեսանյութերը, որոնցում նոր ազատագրված բերդաքաղաքի պարիսպների վրա ծածանվում էր Հայ Յեղափոխական Դաշնակցության ջոկատների դրոշը, Ղազանչեցոցի՝ հրետակոծությունից փուլ եկած քարերի մեջ պար էին բռնել ծեր ու մանուկ:

Ու մեկ էլ լռության մեջ լսեցի Տեր Գրիգորի ձայնը... Ճերմակել էր: Նրան տեսանյութերում երիտասարդ եմ տեսել. օգնում էր Պարգև սրբազանին, մկրտում էին ազատամարտիկներին, օրհնում ու նոր մարտի ճանապարհում: Արկերի պայթյունների ու հրետակոծության ներքո չէին լքում իրենց վանքերն ու պատարագ էին մատուցում: Քայլում ենք Տեր Գրիգորի հետ դեպի Շուշիի մայր տաճար՝ Սուրբ Ամենափրկիչ Ղազանչեցոց եկեղեցի, որը կառուցվել է 1868 – 1887 թթ.: Գանձասարից հետո Արցախի երկրորդ կարևորագույն հոգևոր կենտրոնն է: Այժմ այստեղ է գտնվում Արցախի թեմի առաջնորդի նստավայրը: 20-րդ դարասկզբի Շուշիի ջարդերից հետո՝ 1920 թ., եկեղեցին դադարեց գործելուց, օգտագործվեց նախ որպես պահեստ, ապա՝ որպես ավտոկայանատեղի: Այդ ժամանակաշրջանում էլ կործանվեցին եկեղեցու մուտքի մոտ դրված հրեշտակների արձանները: Մինչև Շուշիի ազատագրումը կիսավեր վիճակում էր, գմբեթը փլվել էր: Ղարաբաղյան պատերազմի ժամանակ այստեղ էր գտնվում ադրբեջանցիների ԳՐԱԴ հրթիռային համակարգի պահեստը: Ազատագրումից հետո ամբողջովին վերանորոգվեց, 1998-ից ի վեր գործող եկեղեցի է: «Հոգևորական, թե աշխարհական՝ մենք բոլորս մեր հայրենիքի զավակներն ենք, հարկ եղած ժամանակ՝ զինվորը, մանավանդ այն ժամանակ, երբ կռվողների թիվը քիչ է: Հիշում եմ՝ պատերազմի տարիներին գեներալ Իվանյանն առաջարկեց զորակոչել 14-70 տարեկան բոլոր տղաներին ու տղամարդկանց, որովհետև հայրենիքը փրկության կարիք ուներ, և դա նորմալ էր», – պատերազմի տարիներն է հիշում Արցախի հոգևոր թեմի առաջնորդ Պարգև արքեպիսկոպոս Մարտիրոսյանը: Շեն ու կանգուն են այսօր Արցախը, Շուշին, բուժվել են նաև եկեղեցու՝ արկերից մնացած սպիները, բայց մի խոր կսկիծ ապրում է դեռ բարձրաբերձ լեռների հեռու խորշերում, ու մերթընդմերթ տնքում են լեռները: Այստեղ դժվար չէ հողի մեջ կրակած փամփուշտներ գտնել, հողն իր կրծքում դեռ պահում է պատերազմի դառը հիշողությունը: Մեզ պարտադրված այն պատերազմի, որը, սակայն, նոր էջ բացեց հայ ժողովրդի պատմության մեջ, իսկ Շուշիի ազատագրումը հայոց նոր ժամանակների ամենափառահեղ հաղթանակը եղավ: «Երբեք չեմ մոռանա Շուշիի ազատագրման 20-ամյակին նվիրված զորահանդեսի վերջին փորձերը: Ի՜նչ ուժ կար ազատ Արցախում հայ զինվորի հաղթական քայլքի մեջ: Այդ զինվորների հայրերն ու պապերն են քսան տարի առաջ կերտել մեր հաղթանակը, – պատմում է գեներալ-մայոր Արկադի Տեր-Թադևոսյանը: – Այնտեղ հավաքվեցինք մի քանի հրամանատարներով և վերլուծեցինք ընդհանուր իրավիճակը: Ես մի առաջարկություն ունեի. թշնամուց մաքրելով Շուշիի մերձակայքը՝ օղակի մեջ վերցնել, ապա գրոհով ազատագրել քաղաքը: Սակայն հակառակորդի ուժերը կենտրոնացած էին որոշակի բարձունքներում, և նրանց ծայրագույն հենակետերի միջև ընկած էր ավելի քան 35 կիլոմետր: Ռազմաճակատի նման երկար գծի վրա շատ բարդ էր առանց այն էլ սակավաթիվ մեր ուժերը տեղաբաշխելը: Որոշվեց ստեղծել մեր ուժերի հարվածային խմբավորումներ, որոնք պետք է գրոհեին չորս ուղղություններով: Վերջապես, որպես ԼՂՀ ինքնապաշտպանության ուժերի գլխավոր հրամանատար՝ շտաբի պետ Ֆելիքս Գզողյանի հետ որոշում ընդունեցինք հակառակորդին ոչնչացնելու մասին: Հարձակման օրը հաստատեց ԼՂՀ Պաշտպանության կոմիտեի նախագահ Սերժ Սարգսյանը»:

Շուշիի ազատագրումը կազմակերպվել է չորս հիմնական ուղղություններով: Առաջինը «26»-ի հյուսիսային ուղղությունն էր՝ Ստեփանակերտ-Շուշի մայրուղիով (հրամանատար՝ Վալերի Չիթչյան), երկրորդը Շոշ գյուղի արևելյան ուղղությունը (հրամանատար՝ Արկադի Կարապետյան), երրորդը Լաչինի կամ Լիսագորի հարավային ուղղությունը (հրամանատար՝ Սամվել Բաբայան), չորրորդը Ջանհասան-Քյոսալարի հյուսիսարևմտյան (հրամանատար՝ Սեյրան Օհանյան) ուղղություններն էր: Տարիներ անց Սեյրան Օհանյանը հիշում է. «Երկրապահները միշտ էլ առաջինն են արձագանքել հայրենիքի կանչին, անվարան նետվել վտանգին ընդառաջ: Շուշիի ազատագրումը երկրապահ կամավորականների պատմական առաքելության ամենավառ դրսևորումներից մեկն էր, որ մինչ այդ մղված ազատագրական մարտերի թագն ու պսակը եղավ»:

Մայիսի 7-ին մութն ընկնելուն պես հայկական ջոկատները գրավեցին ելման դիրքերը, իսկ մայիսի 8-ին՝ ժամը 2:30-ին, սկսվեց հարձակումը: Արհամարհելով թշնամու գերազանցող ուժերը՝ մեր մարտիկներն իրենց խիզախությամբ նոր էջ բացեցին հայ ռազմարվեստի պատմության մեջ: Շուշիի ազատագրման ռազմական գործողությունը Արցախի ինքնապաշտպանության ուժերի ծանրակշիռ ու լուրջ հաղթանակն էր, որ ձեռք բերվեց այդ ուժերի բոլոր կառույցների տքնաջան ու մանրակրկիտ նախապատրաստության, հմուտ ղեկավարության, բոլոր աստիճանների հրամանատարների փոխհամագործակցության, մարտական ջոկատների վճռական, ինքնազոհ գործողությունների շնորհիվ: Մայիսի 9-ի լուսաբացը քաղաքը դիմավորեց հայ ազատամարտիկների հաղթանակի կրակահերթերով: Շուշին ազատագրված էր ադրբեջանական գերությունից: «Ստեփանակերտում էի, լուր հասավ, որ Շուշին ազատագրվել է: Ստեփանակերտից մինչև Շուշի ոտքով գնացի: Ժողովուրդը ցնծության մեջ էր: Մեքենաները կանգնում էին թե՝ Բակո՛ւր, արի միասին գնանք: Հրաժարվում էի: Ճանապարհին նայելով, խորհելով ու մտքերս գրի առնելով՝ գնում էի: Ես այդ ողջ պատմության ականատեսն էի, գրի առնողներից մեկը», – հիշում է արձակագիր Բակուր Կարապետյանը: «Արդեն գիտեինք, որ նախատեսվում է Շուշիի ազատագրման ռազմագործողությունը: Պայմանավորվել էի մի քանի գործընկեր օպերատորների հետ, որ մի քանի կողմից նկարահանենք հարձակումը, մերոնց մուտքն ու բերդաքաղաքի ազատագրումը. չէ՞ որ դա պատմական աննախադեպ իրողություն էր դառնալու, սերունդների համար անչափ կարևոր ժառանգություն: Ոմանք համաձայնեցին իմ փոքր-ինչ խենթ թվացող առաջարկի հետ, ոմանք վախեցան՝ դժվար կլինի գրոհի ընթացքում տեսախցիկ միացնել ու տեսագրել: Հետո, երբ գործողությունը պսակվեց մերոնց հաղթանակով, պարզվեց, որ միայն ես եմ նկարել: Անգամ նրանք, ովքեր խոստացել էին օգնել, ուղղակի լքել էին իրենց «դիրքերը»: 18 տեսաերիզ նկարել էի, 36 ժամ չէի հեռացել տեսախցիկից: Ցավոք, ինքնաթիռը, որով տեսանյութերը էինք տեղափոխում, պայթեցրին: Ահա թե ինչու հիմա այդ կադրերը չկան: Այդ իրադարձությունների ժամանակ ծանր վիրավորվեցի, երկար ժամանակ չկարողացա լինել Արցախում, բայց ապաքինվելուց հետո որդուս հետ կրկին մարտի դաշտում էինք», – պատմում է օպերատոր Շավարշ Վարդանյանը:

Ի վերջո, ի՞նչ էր Շուշիի ազատագրումը զինվորի ու արցախցու համար: Այս հարցին ի պատասխան՝ ԼՂՀ ՊԲ գնդապետ Մ. Ավշառյանն ասում է, որ այն ժամանակ իրենք իրենց որպես զինծառայողներ դեռ չէին ընկալում: Բայց այլ էր արցախցու, ավելի ճիշտ՝ ստեփանակերտցու հոգեվիճակը: «Ստեփանակերտցի ամեն մի տղայի պարտքն էր մեր քաղաքը ռմբակոծումից ազատելը, – ասում է Մ. Ավշառյանը: – Հիշում եմ, երբ առաջին աշխատավարձը բերեցին,

⊃26

25➲

որ տղաներին բաժանեն, ասինք. «Էս հինչ ե՞ք անում, խի մունք դրա հետի ե՞նք ծառայում»: Այսպես է եղել: Ամեն մեկն էլ ցանկացել է գնալ ու մասնակցել Շուշիի կռվին: Իհարկե, եղել են բազմաթիվ մարտերով անցած լավ տղաներ, որոնք Շուշիի ազատագրմանը չեն մասնակցել, բայց հարցը դա չէ: Ուղղակի մեր՝ ստեփանակերտցիների մեջ կար էդ բանը՝ էդ թուրքի ձեռը էնտեղից կտրել: Դա մեր քաղաքն է, իրենցը չէ: Հետո կնանիք, աղջկերք հարցնում են թե՝ ձեզ ի՞նչն է ստիպել, որ պատերազմի էս հատվածը տարել եք, քիչ եք եղել, զենք քիչ է եղել: Ես միշտ կատակում եմ՝ մենք ձեզանից ամաչել ենք, դրա համար էլ հաղթել ենք: Կռիվը տանուլ տված ո՞նց պիտի նայեինք երեխեքին: Ես էլ չորս երեխա ունեի, բոլորը՝ նկուղում, մի պահ Չանախչիում էին, մայիսի 2-ին բոլորին բերել եմ տուն: Հայրս ասում է. «Ինչի հե՞տի ես բերալ խոխոցը»: Ասում եմ. «Գիդվյալ չի, մեզնը հետ հինչ կկատարվի, թող մեր խոխեքը գիդան»: Էդպես ենք մտածել, կինս էլ էդպես է մտածել՝ ինչ ուզում է լինի, թող ես կողքին լինեմ, խոխեքը կողքին լինեն: Ո՞վ է մտածել, թե ով է կենդանի գալու, ով՝ վիրավոր, ով՝ զոհված: Էն ժամանակ ուղղակի մի տեսակ ատելություն է եղել, որը մի տեղից պիտի դուրս գար: Պարկի բերանը արդեն համարյա կապված է եղել: Էլ տեղ չունես՝ կամ պիտի պայթես, կամ պիտի հանձնվես... Ու Շուշիի կռվում ամենադժվարը մեր՝ չորրորդ վաշտի կենտրոնական ուղղությունն էր: Էն ժամանակ տեխնիկայի մեծ ուժը Սամվել Կարապետյանի դասակում էր, ինքն էլ կանգնել ասել էր՝ ճանապարհով մենք ենք բարձրանալու: Երբ գիտես, որ ժամանակին դու ես էդ ճանապարհով բարձրացել, հիմա ամեն գնալուց քեզ լավ ես, էլի, զգում», – հիշում է ազատամարտիկ հայորդին:

22 տարի է անցել Շուշիի ազատագրման հաղթական օրվանից: Առանձնահատուկ խորհրդավորություն ունի այս քաղաքը: Այն առավել խորհրդավոր է կեսգիշերին: Երբ լռում է փողոցի աղմուկը, լույսերի մեջ շողում է Ղազանչեցոց Ամենափրկիչ եկեղեցին:

***Նաիրա ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ***

# Митрополит Иларион: Русские и армяне ощущают себя единоверными народами

**Гостем передачи «Церковь и мир», которую ведет на телеканале «Вести-24» митрополит Волоколамский Иларион, стал глава Российской и Ново-Нахичеванской епархии Святой Армянской Апостольской Православной Церкви архиепископ Езрас (Нерсисян).**

**Митрополит Иларион:** Здравствуйте, дорогие братья и сестры! Христос воскресе! Вы смотрите передачу «Церковь и мир». Сегодня мы поговорим о взаимоотношениях между Русской Церковью и Армянской Церковью. У меня в гостях – глава Новонахичеванской епархии Армянской Апостольской Церкви архиепископ Езрас (Нерсисян), родной брат Католикоса всех армян Гарегина II. Здравствуйте, владыка! Христос воскресе!

**Архиепископ Езрас:** Воистину воскресе! Прежде чем облечь свои мысли в слова, я хочу выразить безграничную благодарность за предоставленную возможность общаться с Вами, встретиться с Вами, говорить об истории взаимоотношений наших единоверных народов и сестринских Церквей. Как Вы знаете, Армянская Церковь – одна из древнейших Церквей христианского мира. В 301 году, с Божией помощью и трудами святого равноапостольного Григория Просветителя, армянский царь принял христианство и провозгласил его государственной религией. Наша Церковь называется Апостольской: еще в I веке по Рождестве Христовом в Армению пришли два апостола – Фаддей и Варфоломей, – которые проповедовали в нашей стране спасительное слово Господа и стали основоположниками нашей святой Церкви. На пути своего многовекового, 1700-летнего бытия Армянская Церковь неуклонно придерживалась таких христианских и общечеловеческих ценностей, как мир между людьми, между народами, между странами, как терпимость в отношении друг друга. Она и сегодня идет по этому пути.

**Митрополит Иларион:** Владыка, я хотел бы попросить Вас ответить на некоторые вопросы, которые часто задают наши те-



лезрители. Например: почему Армянскую Церковь называют Григорианской? Я думаю, что она называется так по имени святого Григория Просветителя, который проповедовал в начале IV века и благодаря которому была крещена Армения. Ведь христианство было объявлено государственной религией Армении еще в 301 году, то есть за 12 лет до Миланского эдикта равноапостольного императора Константина. Григорий Просветитель почитается как святой и в Православной Церкви. И это, как и многое другое, нас объединяет.

**Архиепископ Езрас:** Вы абсолютно правы, владыка. Я интересовался вопросом, откуда пошло название «Григорианская Церковь», тогда как ее официальное название – «Армянская Апостольская Православная Церковь». История армянского народа была сложная. В 1828 году Восточная Армения присоединилась к России, что, естественно, помогло армянскому народу и Армянской Церкви в этой части страны возродиться. А западная часть осталась под властью Турции. В 1836 году, когда российское государство утвердило положение Армянской Церкви, в него было включено название «Армяно-Григорианская Церковь». До 1836 года такое название нигде не фигурировало. Мы сами никогда его не используем.

**Митрополит Иларион:** В этом году у нас с вами совпала дата празднования Пасхи, что бывает далеко не всегда. Это связано с тем, что мы празднуем Пасху по юлианскому календарю, а вы, как и католики, – по григорианскому. Но здесь слово «григорианский» имеет совершенно другой смысл, потому что оно указывает на Римского Папу Григория XIII, при котором в Западной Церкви был введен новый календарь. Я хотел бы чуть-чуть блеснуть познаниями в армянском языке, а потом скажу, от кого я это узнал. По-армянски Пасха звучит как Сурб Затик.

**Архиепископ Езрас:** Совершенно правильно.

**Митрополит Иларион:** Я слышал, что это происходит от слова «азат», что означает «свобода».

**Архиепископ Езрас:** Совершенно правильно.

**Митрополит Иларион:** Я услышал это в своей прошлой передаче от Сати Спиваковой, которую Вы, конечно, знаете. Она, армянка по происхождению, рассказывала о том, как празднуется Пасха в Армянской Церкви.

**Архиепископ Езрас:** Хочу отметить, что Армянская Церковь живет по двум календарям: по новому стилю и по старому. Так, наш Иерусалимский Патриархат руководствуется юлианским календарем. Но Первопрестольный святой Эчмиадзин живет по григорианскому календарю, название которого, как Вы уже сказали, не связано с именем Григория Просветителя. Поскольку Пасха является подвижным праздником, очень часто ее празднование по григорианскому календарю совпадает с празднованием по календарю юлианскому. Так случилось и в этом году, когда все мы в один день, 20 апреля, отпраздновали Воскресение Христово. Но и в те годы, когда наши пасхалии не совпадают, это обстоятельство нисколько не мешает нам вместе восхвалять Воскресшего Бога и просить Его милости и благодати для всех наших верующих. В силу многих исто-

➲27

***Карен МГДСЯН***

***

Нас толкали к пропасти потерь.
Под бременем грехов хилела вера.
Будь милостив Ты к нам хотя б теперь:
Должна же быть и испытаний мера!

***

То ли сходим с ума, то ль теряем рассудок,
пребывая в мечтах,
То ль, себя растеряв или вновь обретя,
заедаем свой страх
Сожалений по-детски немыслимым бредом,
Что и жизнь не была
устремленьем к победам.

***

Столь ли велика вина народа –
Муровать его надежды в склеп?
Быть ли каре лишь такого рода,
Чтоб черствел в руках надежды хлеб?!

***

Зовом гор родных вновь к тебе тянусь.
Сам печаль-тоска, странником одет.
Мой Наирский край, родина и грусть,
Кузницы другой вере нашей нет.
Коронован я пиками вершин,
Опоясан рек серебром живым,
В верности к тебе я непогрешим.
В храмах песен я снова человек.
Бездну пропастей я твоих постиг.
Свет твоих письмён освещает путь.
До небес и мой ты вздымаешь крик,
Без тебя и мне не даёшь вздохнуть.
Древний мой народ веры крест несёт,
Дав понять векам – непреклонен он.
Крест даёт крыла и зовёт на взлёт.
Пульс души у нас – колокольный звон.
Зовом гор родных вновь к тебе тянусь.
Нежности к тебе преисполнен дух.
Мой Армянский край, я к тебе вернусь.
Лишь тобою жив, я к тебе иду.

## Ода земле Араратской

Ты не просто земля, ты – святыня святынь.
Ты не горы камней, ты – узорный хачкар.
Ты не песенный свод мне, ты – чётки молитв,
Свиток в камне с печалями вечными в дар.

Не озёрная гладь, весь ты ширь-океан.
Ты вершинами гор дал ковчегу приют.
Плясок наших гайканских огонь тебе дан
Аромат абрикоса ветра мне несут.

Счастья жало веками ты носишь в себе,
Ты взрастил и волшебной лозы виноград.
И другим ты себя и не видишь в судьбе,
Отчим кровом сынов призывая назад.

Пусть невзрачен твой лик, диковато щербат.
Корни веры в себе ты пустил глубоко.
Край армянский, заветный для нас Арарат,
Я с таким лишь тобою, любимый, знаком.

***Перевод с армянского Ашота САГРАДЯНА.***

**26➲**

рических причин сегодня мы не имеем возможности причаститься от одной Чаши, но это нисколько не мешает нам чувствовать духовную близость, духовное единство, в котором живут наши народы, наши страны. Это великий Божий дар нашим народам.

**Митрополит Иларион:** Я хотел бы пояснить телезрителям, что наши Церкви не имеют евхаристического общения с V века, то есть это очень-очень давняя история. Это было связано с Халкидонским Собором, который мы признаем IV Вселенским Собором и который Армянская Церковь не признала. И не только Армянская. Есть еще несколько Церквей, которые относятся к семье древневосточных, или ориентальных, или, как мы их иногда называем, дохалкидонских Церквей, которые признают только три первых Вселенских Собора и не признают последующие четыре. Хотел бы очень кратко пояснить нашим телезрителям суть наших богословских расхождений. Мы говорим, что в Иисусе Христе две природы – божественная и человеческая, что Христос единосущен нам по человечеству, то есть Он такой же человек, как мы, и Он единосущен Отцу по Божеству. Вы говорите, что во Иисусе Христе одна природа. Но это не одна божественная природа или одна человеческая, как часто ошибочно думают наши верующие, а одна богочеловеческая природа, то есть одна природа, состоящая из двух – божественной и человеческой.

**Архиепископ Езрас:** Абсолютно правильно. Именно так понимает единство Воплощенного Слова в Иисусе Христе наша Церковь, следуя учению святого Кирилла Александрийского. Если бы Армянская Церковь была монофизитской, он бы не стала предавать анафеме не только Нестория, но и основоположника монофизитства Евтихия.

**Митрополит Иларион:** Вы упомянули людей, о которых, возможно, наши телезрители не слышали. Святой Кирилл Александрийский жил в V веке. Он был главным действующим лицом на III Вселенском Соборе. А упомянутые Вами еретики – Евтихий и Несторий – представляли как бы две противоположные крайности. Евтихий говорил, что в Иисусе Христе человеческая природа была полностью поглощена божественной, и Он не был полноценным человеком. И мы, и вы осуждаем это как ересь монофизитства. Но когда термин «монофизиты» применяют к Армянской Церкви – или к Эфиопской или Коптской, – это неправильно, потому что в ваших Церквах никто не сомневается в том, что Христос был полноценным Богом и полноценным человеком. Несторий впадал в другую крайность. Он говорил, что во Иисусе Христе было как бы два субъекта – Бог Слово и человек Иисус. И это Бог Слово вселилось в человека как в дом. И мы, и вы отвергаем это как ересь, потому что мы говорим, что Бог Слово и Иисус Христос – это одно и то же лицо.

**Архиепископ Езрас:** Мы признаем: одна воля, одно лицо, одно Божество в Иисусе Христе.

**Митрополит Иларион:** Вы говорите – одна воля. Мы говорим – две воли. Мы говорим – воля божественная и воля человеческая, но сразу же добавляем, что это не две противоположные воли, не две воли, находящиеся в конфликте, что всегда во Христе Его человеческая воля находилась в полной гармонии и полном согласии с волей божественной.

**Архиепископ Езрас:** Армянская Церковь не является монофизитской. Армянская Церковь – Апостольская и Православная Церковь. К сожалению, многие верующие, не знающие учения Православной Церкви и Армянской Церкви, обращают внимание на внешние формы и говорят: вы неправильно креститесь – слева направо, а мы справа налево. Крестное знамение – это самая краткая форма выражения нашей христианской веры, а христианская вера, как сказал еще в V веке историк нашей Церкви святой Егише, является цветом кожи армянского народа.

**Митрополит Иларион:** И именно христианство на протяжении веков сохраняло армянский народ. Именно за веру во Христа страдали армяне: во время геноцида, начавшегося в 1915 году, их погибло более миллиона. Ведь их уничтожали, истребляли, изгоняли из своей земли не за что иное, как за христианскую веру. Армянская Церковь свою веру выстрадала. Действительно, мы сейчас не имеем евхаристического общения, мы не имеем единства Церкви, потому что у нас есть накопившиеся разногласия, но у нас есть богословский диалог. Мы обсуждаем то, что нас разделяет. Мы объясняем друг другу наши позиции. А самое главное – у нас есть дружба, у нас есть любовь. Армяне живут в России и чувствуют себя как дома. Русские живут в Армении, и недавно в Ереване был построен храм для русской общины. Мы ощущаем себя единоверными народами, потому что мы верим во Христа. Мы эту веру пронесли, в том числе ценой подвига мучеников.

**Архиепископ Езрас:** Молюсь о том, чтобы Господь Бог укрепил единство, братство между нашими народами, между нашими сестринскими Церквами, чтобы мы богоугодными делами всегда славили нашего Спасителя.

***Патриархия.ru***

# Жуков и Баграмян



Многие славные страницы биографии маршала Ивана БАГРАМЯНА (1897 – 1982) нашли отражение и в военной литературе, и в историко-мемуарных трудах. В них обобщена его плодотворная полководческая и разнообразная общественно-политическая деятельность. Вместе с тем до сих пор остаются малоизвестными для широкой общественности многие десятилетия деятельности Баграмяна.

«...Им был внесен огромный вклад в дело укрепления оборонной мощи государства, – пишет бывший министр обороны РФ Сергей Иванов в своем предисловии к недавно вышедщей книге Владимира КАРПОВА «Маршал Баграмян: «Мы много пережили в тиши войны». – Именно под его руководством была воссоздана централизованная система тылового обеспечения Вооруженных сил, усовершенствованы службы тыла, приобрела системный характер деятельность по подготовке в тыловом отношении театров военных действий, разработаны новые уставы и наставления по боевой и оперативной подготовке тыла». Книга В. Карпова ценна еще, в частности, тем, что, пожалуй, впервые русский автор рассказывает о неформальных, теплых и дружеских отношениях, сложившихся между Иваном Баграмяном и Георгием Жуковым. О том, как Баграмян, далекий от «подковерной политики» и интриг, не испугавшись гнева Никиты Хрущева, поддержал «Маршала Победы» в самый трудный период в его жизни, когда от него отвернулись все маршалы и весь генералитет.

На празднование 20-летия Победы Жукова впервые после опалы пригласили на прием в Кремль. Когда он вошел в зал, где собирались гости до застолья, все вдруг притихли и устремили взоры в сторону Жукова. Он прошел через весь зал и подошел к Баграмяну, пожал ему руку, обнял и тепло поздравил. Ни к кому другому Жуков не подошел!

...В июне 1956 года маршал Баграмян был назначен начальником Академии Генштаба. В этих стенах Иван Христофорович провел два счастливых года, с 1936 по 1938 годы. Он был в первом выпуске этой вновь созданной академии. Какой блестящий был этой первый выпуск!

...Как всегда, на новом месте службы Баграмян прежде всего уяснил свои обязанности. Основная задача заключалась в следующем: обучать и готовить генералов, адмиралов, старших офицеров всех видов вооруженных сил для работы на командных и штабных должностях в оперативно-стратегическом звене армии и флота.

Любая теория опирается на практику и подтверждается практикой. Чем располагал маршал Баграмян и преподавательский состав, приступая к разработке новой стратегии? Какая практика применения ядерного оружия была в их распоряжении? Ведь первые атомные бомбы американцы уже сбросили на Хиросиму и Нагасаки...

9 сентября 1954 года Жуков по решению Президиума ЦК КПСС провел секретные учения с войсками и с реальным взрывом атомной бомбы в Тоцком учебном центре под Оренбургом. Учение это достигло исследовательских целей. Баграмян не раз просматривал секретный фильм о подготовке и проведении учения, изучил подробный отчет результатов учения. Стало понятно, что произойдет, если американцы обрушат по своему плану «Дропшот» 300 атомных бомб на наши города, а мы успеем ответить, пусть даже меньшим количеством бомб.

Баграмян и его коллеги определили следующее: ядерное оружие – это оружие необычное, и к нему невозможно подходить только с чисто военными мерками. В подходе к ядерному оружию только как к сдерживающему средству, а не как к средству ведения вооруженной борьбы, вообще нет гарантии, что оно не будет применено для нанесения внезапного удара.

Маршал Баграмян располагал разведсведениями о взглядах и действиях американцев по этим же проблемам. Проведенные испытания атомных бомб (а позднее создание межконтинентальной ракеты) в СССР показали, что безнаказанно осуществить свой план «Дропшот» американцам не удастся. О том, что они это поняли, и как в связи с этим менялась их стратегия, свидетельствует «Доклад начальника штаба армии США (генерала М. Тейлора) за период с 1 июля 1955 года по 20 июня 1957 года». Этот период совпадает с временем пребывания Баграмяна в должности начальника академии Генштаба.



...В общем маршал Баграмян проделал огромную работу в один из самых сложных периодов деятельности академии Генерального штаба. В беседе с маршалом (позднее этих событий) за чашкой чая и рюмкой отличного армянского коньяка с «фирменными» пирожками Тамары Амаяковны мы однажды коснулись событий того Октябрьского Пленума. Иван Христофорович неодобрительно сказал:

– Это не партийный пленум, а подковерная политика, мастером которой был Хрущев. Он испугался, что Жуков может его сместить, ему надули в уши, что полководцы стали главами государств: в Америке – Эйзенхауэр, в Югославии – Тито, в Албании – Энвер Ходжа. Особенно Хрущева насторожил случай, когда Жуков, защищая его же в борьбе с оппонентами, пригрозил вызвать в Москву танки.

Иван Христофорович помолчал, он вообще говорил неторопливо, не повышая голоса.

– Я думаю и уверен, Жуков никогда не помышлял о захвате власти. Он не политик. Он военный до мозга костей. Его потолок в работе и в мечтах – пост министра обороны. Хрущев оболгал его, бессовестно обвиняя в бонапартизме.

Подтверждая это свое мнение, Иван Христофорович рассказал:

– В 1924 году меня направили на учебу в Высшую кавалерийскую школу Красной Армии. Она находилась в Ленинграде. Из двухсот слушателей была выделена группа из 25 человек, более старших по званиям, в основном командиров полков. В нее вошли многие в будущем крупные военачальники: Жуков, Рокоссовский, Еременко и другие. Мы были молодые и, вполне естественно, кроме учебы нам хотелось иногда и развлечься, и погулять, что мы и делали: уходили в город, иногда ужинали в ресторане, ино-

➲29

